# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՍՐԲՈՅՆ ՆԵՐՍԻՍԻ

# ՊԱՐԹԵՒԻ

# ՀԱՅՈՑ ՀԱՅՐԱՊԵՏԻ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի Տպարանի Մխիթարեանց

1853

# Ա Զ Դ

Ներսէս՝ Մեծ արդարապէս ձայնեալ և երկրորդ լուսաւորիչ Հայոց, արդիւնաշատն և օրինակ հայրապետաց, զարմանալին քաղաքավարութեամբ և քաղաքագիտութեամբ երկնաւոր և երկրաւոր կարգաց, և կենդանի խնամք հայաստանեայց, համանգամայն օծանդակելով և զեկեղեցի և զթագաւորութիւն, զպաղթութիւն սպատերազմաց և զհամբերութիւն տառապելոյ և տնանկ մարդկութեան. որ վեհափայլ կենօք եկեաց և վեհակերպս իմն փոխեցաւ ՛ի կենաց, տեսանողական աչօքն և քահանայա-

պետականն փառաց ընթադրելով զարհաւիրս մահու, և զծածուկս խորոց ամանակաց հոլովնելով 'ի լոյս. բարեբաղդ գտանի Թերևս 'ի հարս մեր, կամ Թէ մեք իսկ բարեբաղդագոյնք, զայսպիսի ունելով զնորա կենացն վայելչահիւս պատմուԹիւն. որ Թէպէտ խուն առ Նորին մեծուԹեամբ, զի զ՞ինչ իսկ այնպիսում գեր եղելոյ 'ի մարդին՝ գուցէ հնար պատշաճեցուցանել. այլ առ մեզ մի ճանաչի 'ի գեղեցիկ չափով և համով սափերաց դպրուԹեան հայ լեզուիս, մանաւանդ ըստ վիպասանուԹեան առանձինն կենցաղականացն: Որոյ և հեղինակ դիւոցն Թուի ժամանակակից կամ ոչ շատ կրսեր 'ի Նմանէն, որպէս յիշեացի և 'ի ծանօԹուԹիւնսն ըղկնի՝ 'ի Թիւ 129. գործ՝ սա ոսկեակ դարու Թարգմանչաց, և ոչ Մեսրովբայ երիցու 'ի ձեռն կացելոյ՝

հետեւողի և կրկին յերիւրողի պատ-
մութեան բազում յաւելուածովք,
'ի միացորդաց Հայոց պատմութեանց
քաղելով, որպէս և ասէն։ Բայց ո
ոք և զսա գրեաց՝ ընկալցի շնորհս
առ 'ի մէնջ և յընթերցանելեաց.
իցէ՜ւ թէ և ձեռին ճարտարի հա-
նեալ էր 'ի նկար զհրաշագիծ
դրուագս դիպաց որ 'ի սմայն պատ-
մին. մանաւանդ զողբերգական
դէպս սպանման Գնելոյ յամենո-
րաբեր հանդիսին նաւասարդայ
Հայոց, աշխարհախումբ բանակացն
և եկեղեցական դասուց, զդիմակ
դիմակ կրիցն՝ զպատանեկին հէքոյ և
զնորահարսին Փառանձեմայ, զդա-
ւաճանացն և զտարփածուաց, և
զմեծի քահանայապետին՝ ճշգրիտ
կենդանագրելով։

---

Օրինակք վեց կամ եօթն կային առ մեզ պատմութեանս․ յորոց բնագիր ընտրեցաք զերկաթագիր Տօնականի գրելոյ յ՚ ԺԲ դարու, զոր և բուն Օր․ կոչեմք 'ի ծանօթութիւնս․ և Բ օր․ զսքանչելի գրուած բոլորգիր ԺԳ դարու․ զանց առարեալ զայլովքն, բայց միայն և զերկու երկաթագիր հատուածս նոյն պատմութեան՝ Գ և Դ․ օր․ կոչեմք, ակն արկանելով և 'ի նոսա։ Միայն զայլաձայնութիւնս անուանց գահուց իշխանացն Հայոց՝ հաւաքեցաք յամենայն օրինակաց, այլ և 'ի վեցից օրինակաց պատմութեան Մեսրովպայ Երիցու, զոր առ ձեռն ունիմք, և նշանակեցաք 'ի ծանօթութիւնսն։

# ՅԱՂԱԳՍ ՉԱՐՄԻՑ
# ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ
# ՀԱՅՈՑ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ
## ԵՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՍՐԲՈՅՆ ՆԵՐՍԻՍԻ ՀԱՅՈՑ
# ՀԱՅՐԱՊԵՏԻ

Ա. ՅԱՄԻ ութուտասներորդի մեծին Տրդատայ նստաւ յաթոռ սրբոյն Թադէոսի առաքելոյ՝ Լուսաւորիչն Հայոց Գրիգոր. և նա դարձոյց զամենայն Հայս 'ի գիտութիւն Ճշմարտութեանն Քրիստոսի: Եւ յետ ամաց փոխի 'ի կարգս հրեշտակաց. և գտեալ զնա վախճանեալ յոտն լերինն հովուացն, և ոչ ծանեան. և թաղեցին զնա իւր հանդերձիւն, քարակոյտ ա-

բարեալ 'ի վերայ նորա ։ Իսկ 'ի կենդանութեանն իւրում ձեռնադրեաց իւր փոխանակ զկրսեր որդին իւր զԱրիստակէս ։

Արդ 'ի սպառել թագաւորութեանն Արշակունեաց , բաժանեալ[1] զերկիրս Հայոց Պարսից և Յունաց ։ Յայնմ ժամանակի թագաւորն Յունաց առաքէ զօրավար 'ի Միջագետս զՊերինոխանոս ։ Եւ յաւուրսն յայնոսիկ յայտնեցան նշխարք սրբոյն Գրիգորի Հայոց Լուսաւորչի . և այդ եղեւ կայսերն Յունաց Զենոնայ , և նա առաքէ բազում լեգէոն զօրս 'ի ձեռն զօրավարին Միջագետաց , որ եկեալ բռնութեամբ յափշտակեաց զնշխարս սրբոյն Գրիգորի . և ետ զաջ ձեռնն Հայոց վասն լուսաւորելոյն յառաջագոյն զնոսա , և այլ ինչ եւս մասն . և տարաւ զնա բովանդակ , և այլ մասն ինչ 'ի սրբոց Հռիփսիմեանց 'ի Կոստանդինուպօլիս , և 'ի մի տապանի եդին ։

Եւ սուրբն Ռստակէս եկաց եպիսկոպոս Հայոց մեծաց ամս

եւթն : Եւ սպան զնա Արքեղաւոս ազգաւ Հայ 'ի Ծոփաց գաւառին. և բերին զմարմին Ռստակիսի յԵկեղեաց գաւառ 'ի Թիլն աւան, և անդ թաղեցին զնա : Եւ յաջորդեաց զաթոռ նորա երէց եղբայրն Վրթանէս :

Յաւուրս նորա անկաւ 'ի մեծ պատերազմին սպարապետն Հայոց տէրն Մամիկոնէից Վաչէ. և սուրբն Վրթանէս զյիշատակ նորա 'ի փըրկական պատարագն 2 կարգեաց, և կատարեաց փառն յիշման Վաչէի Մամիկոնեացւոյ, և այլ զօրացն անկելոց 'ի մեծ պատերազմին. զոր կատարեն Հայք մինչեւ ցայսօր :

Եւ յետ այսորիկ վախճանեցաւ Վրթանէս խաղաղական մահուամբ, և եդին զնա 'ի գեւղն Թորդան, ուր եկաց քահանայապետ Հայոց մեծաց ամս հնգետասանս : Յետ նորա յաջորդեաց զաթոռ նորա մանուկն Յուսիկն կըրսեր որդին Վրթանիսի : Իսկ Յուսականն լեալ նորա երկու որդի, անուն միոյն Պապ եւ միւսոյն Աթա-

նագինէս ։ Եւ տեսեալ Յուսիկն զորդիսն իւր անուղղայ գնացիւք , ոչ արժանի լեալ աթոռոյ քահանայութեան , ապա ՚ի սուգ անհնարին կայր և անմխիթար վասն նոցա , և հոգալով կայր յաղօթս անհանգիստ առ Աստուած ։ Ապա ՚ի միում գիշերի երևեցաւ նմա հրեշտակ տեառն և ասէ ․ Մ՚ի տրտմիր Յուսիկ վասն որդւոց քոց , որ ոչ եղեն արժանի քահանայութեան ․ ահա ծնցի ՚ի զաւակէ քո այլ զաւակ , որ նորոգեսցէ զվիճակ Թադէոսի առաքելոյ , և հաստատեսցէ զաթոռ մեծի քահանայապետին Գրիգորի Հայոց Լուսաւորչի ․ և անուանի անուն նորա Ներսէս ․ ՚ի նմանէ բղխեսցեն շնորհք պատուիրանացն Աստուծոյ ․ և խաղաղութիւն բազում և շինութիւն եկեղեցւոյ ՚ի տեառնէ նմա շնորհեսցի ․ բազում մոլորեալք և տրգէտք նովաւ դարձցին առ տէր 3 ․ որով և Քրիստոս բազում լեզուօք փառաւորեսցի նոքօք , որք սիւնք հաւատոյ լինիցին և մատակարարք

բանին կենաց. և բազում տունկք պտղաբերք և շառաւեղք շայեկանք և օգտակարք հոգևոր դրախտին՝ 'ի նոցա մշակութենէն ժողովեցին յըշտեմարանս Աստուծոյ. և բազում անգամ կացցեն 'ի հալածանս վասն անուան տեառն պատուիրանին. և կացցեն անշարժ իբրև զվէմ: Եւ յետ նոցա անցանելոյն Թագաւորեսցէ ստութիւն յապարասան և յանձնասէր և յարծաթասէր և 'ի ստաբան և յանպիտան և 'ի բանսարկու մարդկանէ. ապա թէ կարասցէ ոք զոտն 'ի հաստատութեան ունել, հազիւ ըստ ժամանակին չարութեան:

Զայս ամենայն լուեալ Յուսիկն 'ի հրեշտակէն՝ մխիթարէր յոյժ և գոհանայր զտեառնէ՝ որ արժանի արար զնա այնպիսի յայտնութե: Ապա ամուսնացոյց Յուսիկ զորդի իւր, և առնոյր զքոյր Տիրանայ թագաւորի յամուսնութիւն Աթանագինէ. և անուն կնոջն Բամբիշն: Ի նմանէ ծնաւ բարենշան որդի մի և անուանեցին զնա Ներ-

սէս ըստ հրեշտակին տեսլեանն ։ Յետ այսորիկ վախճանեցաւ Յուսիկն չարչարանօք 'ի Տիրանայ . և տարեալ եդին զնա 'ի շիրիմս հօր իւրոյ Վրթանիսի 'ի Թորդան . որ եկալ զաթոռ կաթողիկոսութեանն Հայոց մեծաց ամս վեց ։ Ապա ոչ գտան 'ի յազգէն սրբոյն Գրիգորի կարգել քահանայապետ . Նստուցանեն զՓառներսեհ ոմն կաթողիկոս Հայոց մեծաց ամս չորս ։ Եւ յետ մահուան նորա զայս ամս լռեաց հայրապետութիւն Հայոց 4 ։

Բ . Իսկ մանուկն Ներսէս սնաւ և ուսաւ 'ի Կեսարիացւոց գաւառին՝ ամուսնանաւն իւրով . և եղեւ որդի մի նորա և անուանեաց զնա Սահակ , 'ի կնոջէն՝ որում անուն էր Սանդուխտ 'ի յազգէն Մամիկոնենից ։ Եւ յետ երից ամաց մեռաւ ամուսինն իւր Սանդուխտ 'ի Կեսարիա . և հայր նորա Վարդան Մամիկոն տարեալ զմարմին նորա 'ի Թիլն աւան , և անդ պահեաց 5 զնա ։

Եւ յետ այսորիկ թագաւորեաց

Արշակ փոխանակ հօր իւրոյ Տիրանայ. և եկեալ Ներսէս լինէր սենեկապետ նորա 'ի վերայ ամենայն գանձուց նորա. վասն զի հօրաքեռ որդի էր Թագաւորին Արշակայ: Իսկ աշխարհն Հայոց 'ի սահմանէն Յունականն մինչև 'ի մեծն Ներսէս, խոտորեալ էին 'ի ճանապարհացն Աստուծոյ 'ի մեծամեծաց մինչև 'ի փոքունս. և գործէին մեղս համարձակ իբրև զՍոդոմ. վասն այնորիկ եթող Աստուած 'ի ձեռանէ իւրմէ և մատնեաց 'ի ձեռս Թշնամեաց իւրեանց. և նեղէին զնոսա յամենայն կողմանց: Ապա միայնակեացք աշխարհին 'ի մի վայր ժողովեալ և մարգարէական հոգւով իմացեալ, եթէ ոչ լինի հնար փրկութեան Հայոց աշխարհիս, եթէ ոչ գայցէ առաջնորդ 'ի յազգէ սրբոյն Գրիգորի: Ապա մի ոմն 'ի մեծ Նախարարացն 'ի գաւառէն Շիրակայ, որ էր միանձնացեալ 'ի լերինս, յազգէն Գնունեաց, որում անուն էր Պարգև, յառաջ մատուցեալ ասէ իբ-

րեւ 'ի տեսչութենէ Աստուծոյ. Եւ տեսի 'ի տան Թագաւորին յազգէ սրբոյն Գրիգորի մանուկ մի, որում անուն կոչի Ներսէս, կատարեալ հասակաւ և լի իմաստութեամբ և շնորհօք Աստուծոյ: Ապա լուեալ զայս ուրախ եղեն յոյժ, զի 'ի ձեռն նորա տալոց էր Աստուած փրկութիւն Հայոց աշխարհին, որ եղեւ իսկ:

Եւ տեսեալ Արշակայ որ ոչ գտանէր առաջնորդ 'ի մնացորդաց սուրբ ազգէն մեծի քահանայապետին Գրիգորի, և ոչ զօրավար 'ի քաջ և 'ի տիրասէր ազգէն Մամիկոնենից. և իմացեալ եթէ աւեր աշխարհին Հայոց այնր աղագաւ պատճառանաց եղեւ. ապա յարուցեալ ինքնին Թագաւորն զօրօքն իւրովք 'ի խնդիր ելանէ քաջ ազգին Մամիկոնենից, որ էին սնուցիչք և մանկակալք և ընտանիք Թագաւորին. ապա երթեալ գտանէր զնոսա յամուրս աշխարհին իւրեանց Տայոց, ընդ նոսին և զԳնունիքն. և դարձուցանէր զնոսա ընդ

իւր . վասն զի պատուականեալ էին յընտանութենէ և 'ի զօրավարութենէ յամենայն գործոց Հայոց 'ի ժամանակին Տիրանայ Թագաւորին ։ Եւ էին յազգէն Մամիկոնենից եղբարք չորք . և անուն նոցա Վարդան և Վասակ , Վահան և Վրուժ , որդիք Արտաւազայ 6 որդւոյ Վաչէի Մամիկոնենւոյ . և կացուցանէր զնոսա զօրավարս Հայոց մեծաց , զոր առաջին Թագաւորքն նուաճեալ էին յիւրաքանչիւր յաւուրս ։ Եւ տայր զգունդն Հայոց 'ի ձեռս Վասակայ կալ ընդդէմ պատերազմաց ասպարապետութեամբ. և զերիս եղբարս նորա ընդ նմա հազարապետս կացուցանէր ։

Եւ կացին զօրավարք Մամիկոնք Ճակատամուխք , ռազմահարք , աղեղնաձիգք , արծուանշանք , նիզակափայլք , տապարախաղք , քաջասիրտք , աներկիւղք 'ի պատերազմունս , աջողակք 'ի մարտս պատերազմաց , բարեհամբաւք , բարենշանք , աղեղնադրօշք . 'ի մարտս պատերազմաց իբրեւ հուր ընդ ե-

զեղն ընթանոյին տիրասէր ազգն Մամիկոնենից, երբեւ կարգեցան զօրավարք Մամիկոնք։

Գ. Յետ այսորիկ խորհուրդ աս_ տուածային 'ի մէջ առեալ երկրիս Հայոց, և ինքն Թագաւորն Արշակ վասն ազգի սրբոյն Գրիգորի քա_ հանայապետութեան. 'ի մի վայր ժողովեալ առ Թագաւորն նախա_ րարք և մեծամեծք Հայոց, ազգք 8, առհմակիցք, գրօշակիցք, տէարք, ամենայն սարասօք, կուսակալք, զօրագլուխք, սահմանաց պահք, եպիսկոպոսունք և երիցունք, և ա_ մենայն խառնաղանջ մարդիկ 'ի մի համանութիւն միաբանութեամբ ե_ կեալ, և ասեն ցարքայն Արշակ. Վասն զի Նորոգեաց Աստուած զաթոռ Արշակունեաց քեւ, և զգահ զօրավարութեան քաջ ազգին Մամիկոնենից, նոյնպէս պարտ է Նորոգել զաթոռ հայրապետութե սրբոյն Գրիգորի ազգի, զի լուսա_ ւորեալ պայծառասցին վարք աշ_ խարհիս Հայոց։ Եւ ասէ Թագա_ ւորն. Ես ինքն 'ի խնդիր եմ այդմ գործոյ։

Ապա յականէ յանուանէ խընդրէին աշխարհաժողով բազմութե՟ն զմանուկն Ներսէս զորդի Աթանագինեայ որդւոյ Յուսկան, որդւոյ Վրթանիսի որդւոյ սրբոյն Գրիգորի. և էր նա 'ի տղայութեանն սնեալ և ուսեալ 'ի Կեսարիացւոց քաղաքին ընդ հաւատարիմ վարդապետօք: Եւ էր ամուսնացեալ վասն ժառանգութեան աթոռոյն, և ընդ համեստ ամուսնոյ իւրոյ կացեալ ամս երեք, որ էր յազգէն Մամիկոնեանից, անուն նորա Սանդուխտ. և 'ի նմանէ ծնի Սահակ: Եւ իբրեւ վախճանեցաւ ամուսին իւր՝ եկեալ յազգական իւր յԱրշակ արքայ, և նա կարգէր զնա սենեկապետ և հաւատարիմ 'ի վերայ կարգաց 9 Թագաւորին: Եւ էր նա մեծահասակ և վայելուչ երեսօք և ահագին տեսողաց, երկիւղած յԱստուծոյ և աղքատաց դարմանիչ. և նեղելոց և զրպարտելոց բարեգոյզ 'ի Թագաւորէն. և յինքենէ նէ կերակրէր զորբս և զայրիս. և 'ի մնարս Թագաւորին զարքունական մատանին բարձեալ 10 ունէր:

Իսկ ժողովուրդն առ հասարակ
զՆեռսէս խնդրէին, զի կարգեսցեն
առաջնորդ Հայոց. և իբրև ածին
առաջի Թագաւորին, և լսէր զբար-
բառ ժողովրդեանն, 'ի մէջ կա-
ցեալ սկսաւ խօսել զանձնէ իւրմէ
զբամբասանս մեղաց և զանօրէնու-
թեանն զոր չէր գործեալ, եթէ ա-
նարժան եմ այդմ գործոյ: Իսկ
իբրև լուան բազմութիւնքն, զա-
ղաղակ բարձին և ասեն. Այդ մե-
ղաւորդ և անարժանդ լիցի մեզ հո-
վիւ և առաջնորդ. և նստցի յա-
թոռ Թադէոսի առաքելոյն և մեծ
քահանայապետին Գրիգորի: Եւ
բուռն հարկանէին զնմանէ: Իսկ
նա ասէր. Զայր մի մեղապարտ և
բիւր չարեօք լի՝ միջնո՞րդ կացու-
ցանէք ընդ Աստուած և ընդ մար-
դիկ, առ ամօթոյ ձերոյ ասեմ.
Իշխանութիւն ունիք մահու և կե-
նաց, 'ի ձեռս ձեր կամ. բայց այդմ
շնորհի չեմ ես արժանի. տացէ
ձեզ տէր ըստ յուսոյ ձերում տե-
սուչ և վերակացու: Զոր իբրև
բազմութիւնքն լուան, ծանեան զի

վասն երկիւղին Աստուծոյ խօսի զանձին խղճէ. ապա ամենեքեան առ հասարակ հանդերձ Թագաւորաւն ամբոխն աղաղակէին. Ի մեզ և 'ի գլուխս մեր դարձցին այն 11 մեղքն զոր դու գործեցեր, և 'ի վերայ անձանց մերոց և 'ի վերայ որդւոց մերոց քո գործքն. բայց դու զվերակացութիւն 12 հարցն քոց նորոգեա 'ի մեզ:

Իսկ Ներսէս իբրեւ այլ ինչ ոչ կարաց տալ նոցա պատասխանի, զի 'ի նոյն ման պնդեալ կային, 'ի Թշնամանս լինէր զօրացն և ասէր. Անօրէնք էք, սխղծք և տիրադաւացք, անաստուածք, տիրասպանք. լի ամենայն չարութեամբ, քսուք, ընկերադաւացք, տիրանենգք, անհնազանդք. և ես ոչ կարեմ ձեզ առաջնորդ լինել. այսօր 'ի տարապարտուց սիրէք զիս, և վաղիւն ատելի և Թշնամի լինիմ ձեզ, և Թակն գլխոյ ձերում կապէք զիս: Զիա՞րդ բառնայցեմ զձեռս իմ յաղօթս առ Աստուած վասն ազգի՝ որոց ձեռք իւրեանց շաղախեալ են ապա

նութեամբ անմեղաց. և կամ զիա՞րդ լինիմ առաջնորդ ազգի որ թողին զտէր Աստուած։ Զայս ամենայն և նման սոցին խօսեցաւ Ներսէս առաջին թագաւորին և իշխանացն և բազմամբոխ ժողովրդոցն։ Հիացեալ թագաւորն լուռ եւեթ կայր։ Դարձեալ ասէր. Թոյլ տուք ինձ անհոգութեամբ ըստ իմում 13 չափու և մեղաց կեալ, և հանդերձեալ դատաստանին ակն ունել հատուցման։

Եւ ամենայն ատեանն ասեն ցնա. Թող մեզ զյանցանս մեր, որպէս եթող տէրն քո իւրոց սպանողացն. զի ոչ այնչափ մեղաք քեզ, որչափ նոքա նմա՝ որ տէրն էր ինքեանց 14. և դու այդ մեղաւորդ լիցիս մեզ առաջնորդ։ Այնչափ պնդութիւն ամբոխին յԱստուծոյ տեսչութենէն լինէր այնպէս։ Եւ յարուցեալ թագաւորն հրամայեաց զգիշերն զգուշութեամբ պահել զնա մինչեւ ՚ի վաղիւն, զի մի փախիցէ ՚ի նոցանէ։ Եւ ՚ի նմին գիշերի հրեշտակ տեսանէ երեւեալ նմա ասէ. Մի

ընդդիմանար այդմ առաջնորդութեանդ. վասն զի 'ի տեառնէ հրամայեցաւ քեզ այդ: Եւ նա ասէ. Տեառն կամք կատարեսցին: Իսկ 'ի վաղիւ անդր ածեալ թագաւորն Արշակ զՆերսէս առաջի իւր և ամենայն ատենին. և յարուցեալ թագաւորն ինքնին յոյժ ցասմամբ և յինքն առնոյր զսուրն պողովատիկ մարդասպանական կամարաւն, զոր ունէր Ներսէս 'ի սպաս թագաւորին. և հրամայէր կապել զնա, և զպատմուճանն զոր ունէր 'ի յանձնէ թագաւորին, զայն 'ի բաց հանել 'ի նմանէ:

Եւ հրամայեաց զծեր ոմն եպիսկոպոս կոչել, որում անուն էր Փեստոս, և բերեալ հանդերձս կղերիկոսականս զգեցուցանել նմա. և տայր ձեռնադրել զնա սարկաւագ. և զհերս գանգրագեղս թագանման վարսիցն զայն 'ի բաց մաքրէին 15 'ի նմանէ. իբրև տեսին զայն բազմութք յարտասուս դարձան. զի ոչ ոք գոյր նման նմա 'ի մարդիկ: Սակայն իբրև տեսին ըզ-

շնորհան Աստուծոյ՝ որ ծագեաց 'ի նա խնդալից եղեն. զի գիտէին որ վասն նորա էր ասացեալն 'ի հրեշտակէն ընդ Յովսէփն, թէ ի զաւակէ քո ծնցի որդի, որ լինիցի անօթ ընտրութեան 'ի մէջ ազգաց. և նա նստցի յաթոռ Թադէոսի և լնու 16 զտեղի հարց իւրոց առաջին հայրապետացն, և ցուցանէ զառաջնորդութիւն կենաց ճանապարհին: Եւ գիտէին զի 'ի տեառնէ էր կոչումն նորա. վասն այնորիկ պնդեալ լինէին ժողովուրդքն ազդեցութեամբ Աստուծոյ:

Ապա յետ այնորիկ գումարեցին գունդս բազումս և եպիսկոպոսունս, զի տարցեն զցանկալին Ներսէս 'ի Կեսարիա, ուր սովոր էին զհայրապետսն ձեռնադրել օծմամբ: Թագաւորն աշխարհախոր 17 գաւանութեամբ կազմէր և արձակէր զօրս զհետ նորա. զզօրավարն Շահէն 'ի Մամիկոնէից տոհմէ, և այլ իշխանս յիւրաքանչիւր նահանգէ. զիշխանն Բագրատունեաց Դաւիթ, զիշխանն Խորխո-

ռունեաց Հմայեակ 18 , զիշխանն Արծրունեաց Սահակ , զիշխանն Գնունեաց Մանէճ 19 , զիշխանն Վարաժնունեաց Տիգրան , զիշխանն Ամատունեաց Վաչէ . և զգաւառակալս աշխարհին , զիշխանն Տարօնոյ զՄուժեղ , զՎզրուկ իշխանն Վրաց , զՎրէն իշխանն Գողթեան , զՎառեն իշխանն Մախազութեան տանն , և զՀայր Մարդպետութեան տանն , որ Թագաւորահայրն կոչէն . զՄախազ իշխանն Անձեւացեաց , զՋարեհ իշխանն Մոկաց , զՄուժան 20 իշխանն Աղձնեաց , զՄեհենդակ իշխանն Ռշտունեաց , զՎարազդ Ըահունի իշխանն Ծոփաց , զՎաղարշ իշխանն Անձտոյ , զՎարազվաղան իշխանն Գաբեղենից , զԳնիթ իշխանն Հաշտենից , զՍագ 21 իշխանն Բարմայ , զԱնդուկ իշխանն Սիւնեաց , զՄանաւազ իշխանն Ձորոց աշխարհին , զԱրտակ իշխանն Հարքայ , զԱրշաւիր իշխանն Անկեղ տան , զԳազրիկ իշխանն Տայոց ։ Ընդ նոսին և եպիսկոպոսք մեծամեծք . զԳրի-

զոր եպիսկոպոս Սիւնեաց, զփաւէն եպիսկոպոս Վրաց, զԹաթուլ եպիսկոպոս Տարօնոյ, ըզՅովսէփ եպիսկոպոս Բագրատունեաց, զՔաջաջ եպիսկոպոս Մարդպետական, զԱմովս եպիսկոպոս Բզնունեաց, զՆերսէս եպիսկոպոս Մոկաց, զՇապուհ եպիսկոպոս Արծրունեաց, զԱբեսողոմ եպիսկոպոս Անձեւացեաց, զՎահան եպիսկոպոս Մամիկոնենից, զՋաւէն եպիսկոպոս Ցրտաւայ, զՏրդատ եպիսկոպոս Բասենոյ, զԳնել եպիսկոպոս Մելտենւոյ: Եւ այլ հընգետասան եպիսկոպոսք՝ որ պատրաստեցան ընդ իշխանսն. և այլ կուսակալք և պետք աշխարհին Հայոց՝ Թըլթով Թագաւորին Արշակայ և ընծայիւք նորին:

Նստուցին զՆերսէս յարքունական կառսն սպիտակաձիգք Ջորւոջ մեծ պատուով. և ընդ նմա հեծեալս չորս հազարս: Զոր իբրեւ՝ի բացեայ տեսանէին զնոսա գաւառքն՝ ՝ի փախուստ դառնային, կարծելով եթէ գունդք Թշնամեաց են. այլ իբրեւ

իմանայի՛ն՝ բազում հիւրամեծարուԹիւն առնէին նոցա իշխանք գաւառացն : Եւ նոցա զբազում օԹեվանս զանց արարեալ, հասանէին 'ի սահմանս Գամրաց 'ի մայրաքաղաքն Կեսարիա . և հանդիպէին եպիսկոպոսին մեծին Եւսեբեայ, և տային զհրովարտակն Արշակայ Թագաւորին, հանդիպեցուցանէին նմա ըղՆերսէս : Իսկ երանելի արքեպիսկոպոսն մեծ պատուով և սիրով ընկալաւ զնոսա, և անյապաղ ըստ առաքելական կանոնացն՝ ժողովեաց բազում եպիսկոպոսունս Յունաց աշխարհին, զի ձեռնադրեսցեն զմեծն Ներսէս բազմամբոխ հանդիսիւ կաԹողիկոս Հայոց մեծաց 'ի վիճակ առաքելոյն Թադդէոսի :

Ապա իբրև մտանէին յեկեղեցին՝ մեծ սքանչելիք երևեցաւ . իջանէր աղաւնի մի սպիտակ յերկնից մարմնաւոր տեսլեամբ, և նստաւ 'ի վերայ սեղանոյն սրբուԹեան յանդիման ամենայն քահանայուԹեանն և բազմամբոխ ժողովրդոցն . և կայր

անգ երիցապետ մի Կեսարու եկե֊
ղեցւոյն, որում անուն էր Բասիլ.
վերացեալ աղաւնոյն կայր 'ի վերայ
նորա ։ Եւ իբրեւ հանին զոսկերսն
Ներսէս 'ի բեմն, թռեաւ աղաւնին
և եկեալ նստաւ և հանգեաւ 'ի վե֊
րայ գլխոյն Ներսիսի, մինչեւ կատա֊
րեցին զսուրբ ձեռնադրութիւնն ։
Եւ իբրեւ այն նշան սքանչելեաց
լինէին 'ի վերայ նորա, ապա և ինքն
հայրապետն իսկ Եւսեբի՝ զբազում
ժամս հիացեալ կայր. և ամենայն
ժողովուրդն աղաղակէին, թէ այրս
այս արժանի է քահանայապետու֊
թեան, վասն զի հանգեաւ հոգի
Աստուծոյ 'ի վերայ նորա, որպէս
'ի Յորդանան 'ի վերայ Փրկչին, և
որպէս 'ի վերնատունն յառա֊
քեալսն ։ Եւ կուտէին 'ի վերայ
բազմութիւնք ժողովրդոցն, զոր
հազիւ ուրեմն կարէին մեկնել 'ի
յեկեղեցւոյն զօրքն Հայոց, որք էին
ընդ սրբոյն Ներսիսի ։ Եւ մտա֊
նէին 'ի ժամ ճաշոյ. և սուրբ քա֊
հանայապետն Ներսէս մտանէր 'ի
պատարագ. և տեսանէին 'ի հե֊

ւաստանէ, զի հրեղէն սիւն յերկնից իջանէր 'ի վերայ եկեղեցւոյն՝ ուր զպատարագն մատուցանէր Ներսէս. լսէին և ձայն երկնաւոր զօրաց, որք երեքսրբեան օրհնութեամբ 'ի սպասու կային նմա: Եւ յետ արձակման Ճաշուն նստէին 'ի Ճաշ. և տեսանէին զի լուսաւորեալ էին երեսք մեծին Ներսիսի որպէս զնախամարգարէին Մովսէսի 'ի լերինն. և ընդ այն առաւել զարմանային տեսողքն:

Եւ յետ այսր սքանչելեացս մեծ պատարագօք և ընծայիւք յիշխանացն Յունաց և յերանելւոյն եպիսկոպոսէն Եւսեբէ, ելանէին 'ի Ճանապարհ զօրքն Հայոց քահանայապետաւն իւրեանց: Իսկ աշխարհն Յունաց և Ասորւոց և այլ սահմանք որ լսէին զսքանչելիսն՝ որ եղեւ 'ի վերայ մեծին Ներսիսի, ելեւելս ամենեքին զհետ նորա, զի օրհնեսցին 'ի նմանէ. և գային ընդառաջ նորա ասելով, թէ Այս այն այր է որ Հոգին սուրբ աղաւնակերպ յայտնեաց 22 զսա Ճշմարիտ

քահանայապետ ։ Եւ բազում բորոտք և հաշմանդամք և ախտաժետք և այսահարք բերէին առաջի նորա, և գտանէին ՚ի նմանէ առողջութիւն. և ամենայն ազգք երանի տային աշխարհիս Հայոց վասն նորա ։

Իսկ ՚ի Սեբաստիա բազում օթեվանս արարեալ սրբոյն Ներսիսի, և հիմնարկեաց անդ եկեղեցիս յոլովս ։ Եւ անդէն իշխանս ութ յառաջ յղարկեցին աւետաւորս առ Արշակ թագաւորն. որ եկեալ հանդիպեցան նմա յԱյրարատեան գաւառին. իշխանն Անգեղ տան, իշխանն Ծոփաց, իշխանն Արշարունեաց, իշխանն Բագրատունեաց, իշխանն Անձտոյ, իշխանն Արծրունեաց, իշխանն Մամիկոնէից. իշխանն Ռշտունեաց ։ Այսոքիւք 23 ելանէր արքայն Արշակ ընդ առաջ սրբոյն Ներսիսի աշխարհագումար ամբոխիւ, մինչեւ յԱռեւծլեառնն ։ Եւ հանդիպեալ միմեանց թագաւորն և կաթողիկոսն, և եղեւ ուրախութիւն յոյժ աշխարհին Հայոց ։ Եւ բերեալ նստուցին զնա յաթոռ

սրբոյ առաքելոյն Թադէոսի և Նախ-նոյն իւրոյ Գրիգորի. և Նորոգէր աթոռ և վիճակ Հայոց մեծաց և ազգանազգեան տոհմին :

Դ. Առնէր և ուսուցանէր ըստ աւետարանին բանի. օրէնս 24 բա-րեաց ցուցանէր զանձն իւր աշխար-հիս Հայոց սուրբն Ներսէս :

Բայց ասացից զպատճառս ձեռ-նադրութեան առնլոյ Հայոց 'ի Կե-սարացւոց. վասն զի յորժամ վի-ճակեցաւ աշխարհս Հայոց Թա-դէոսի առաքելոյ, և եկեալ նախ առ Աբգար արքայ յՈւրհայ և լուսա-ւորեալ զնոսա. և զի էր հանա-պազ լեալ Կեսարիա ընդ Հայոց իշխանութեամբ, և մտեալ անդ ա-ռաքելոյն Թադէոսի լուսաւորեաց զնոսա և ձեռնադրեաց զմի ոմն յա-շակերտաց իւրոց քահանայ և ե-պիսկոպոս, որում անուն էր Թէոփիլոս. զոր եթող առաջնորդ նոցա և ինքն գնաց 'ի Հայս: Այնր աղագաւ առնուին ձեռնադրու-թիւն Հայք 'ի Կեսարիա, մինչև 'ի ժողովն Քաղկեդոնին :

Ե. Եւ իբրեւ ձեռնադրեցաւ մեծն Ներսէս 'ի Կեսարիա, և ե-կեալ 'ի Հայս նորոգէր զգահս իշ-խանացն Հայոց, զոր էր կարգեալ 'ի Խոսրովայ և յայլ Թագաւորացն։ Զնոյնն և նա կարգէր 'ի ժամ Ճա-շոյն 'ի սեղան արքային Արշակայ, բարձս չորեքքարիւր, որ են այսո-քիկ 25.

Հայկազնիք.
Պարթեւեանք.
Այրարատեանք.
Բագրատունիք.
Տրդատունիք 26.
Ասպետունիք.
Մախազունիք.
Խորխոռունիք.
Արծրունիք.
Մամիկոնեանք.
Սիւնեցիք.
Ամատունիք.
Անգեղեանք 27.
Վրացիք.
Ծոփք.
Վարաժնունիք 28.

Մոկացիք .
Սղկունիք 44 .
Քնթունիք 45 .
Ատրպատունիք 46 .
Գողթնեայք .
Գազրիկանք .
Ձողկերաք .
Մախազեանք 47 .
Մրուունիք 48 .
Ռազմունիք 49 .
Գաբեղեանք .
Ապարունիք 50 .
Վահունիք .
Վրընջունիք .
Սուրեանք 51 .
Դիմաքսեանք 52 .
Սրունիք 5.3 .
Դարբանդեանք 54 .
Արագածեանք .
Կոգովտեանք 55 .
Ապահունիք .
Ընծայնոցք .
Հարքեանք .
Կորդուայք .
Առաւեզեանք .
Հաշտեանք .

Վրեանք .
Վանանդեանք 56 .
Փառաձունիք 57 .
Տաշրացիք 58 .
Ուրծեայք 59 .
Մանդակունիք .
Տայք .
Մելխոսեանք 60 .
Դաշտկարինք 61 .
Բասենք .
Ծաղկունիք .
Մամիկոնք երկրորդ .
Փերէժունիք 62 .
Տլքեանք 63 .
Բագուանք .
Աշտոցեանք 64 .
Աբեղունիք .
Խազանեանք .
Սահառունիք .
Աշխադորեանք 65 .
Գնունիք .
Համազգունիք 66 .
Ակեայք .
Վիժունիք .
Առափունիք 67 .
Ճահռապետք .

Դաստամշիռք .
Զորաբնակք .
Ճակատամուղք 96 .
Դերջայինք 97 .
Ղահապունիք .
Բարմեայք 98 .
Կամխեայք 99 .
Գաւառապետք 100 :
Եւ այլ որք չէին 'ի գահս .
Ցուրիպեանք 101 .
Փոքայունիք 102 .
Մուացեանք 103 .
Ապեկունիք .
Խնունիք 104 .
Բազնունիք 105 .
Աղնեւունիք 106 .
Ցիւրանեանք 107 .
Կզնունիք 108 .
Տուշունիք 109 .
Կռունիք .
Մազնունիք 110 .
Մախազունիք :

Այս են գահոյք և այլ եւս յոլով, զոր ծանր համարեցայ արկանել ընդ գրով 111 . զոր նորոգեաց

Արշակ Թագաւորն և կարգեաց 'ի ժամ՝ ճաշոյն իւրոյ 'ի սեղան իւր՝ բարձս չորեքարիւրս՝ հրամանաւ մեծին Ներսիսի : Իսկ 'ի Թիկանց կուսէ Նստէին եկեղեցականք, դասս ինն :

Զ. Արդ յառաջ քան զձեռնադրութիւն մեծին Ներսիսի վանականք և եպիսկոպոսք և միայնակեացք 'ի քաղաքս և 'ի գեղջից միջի բնակէին առ ընտանիս. զոր անվայելուչ և անպատշաճ համարեալ մեծին Ներսիսի : Ապա անդէն մատանէ 'ի Վիրս, 'ի վիճակ առաքելուհւոյն Նունէի. և անտի գայր անցանէր 'ի Յոյնս և 'ի սահմանս Պարսից : Եւ տայր հրաման շինել եպիսկոպոսանիստս և եղբայրանոցս մեծամեծս և փոքունս 112, և հրամայէր 'ի զերծ տեղիս և յանցս ճանապարհաց և 'ի գլուխս լերանց պանդոկս շինել, և հիւրանոցս 'ի քաղաքս և յագարակս : Եւ կարգեաց 'ի վանօրէայս զշիրիմս Թագաւորացն և զիշխանացն և զզօրավարացն, զի ընտանեբար հոգայցեն

զնոսա . և բաժանեաց յեղբայրա-
նոցան զեօղս և զաստակերտս 'ի
մխիթարութիւն նոցա . և ոչ ոք
տեսանէր յաշխարհին Հայոց մու-
րացիկ յաւուրսն Ներսիսի :

Եւ այլ անուղղայ կարգս և անօ-
րէնս մտահաճոյս յերկիրս Հայոց
'ի բազում ժամանակաց ունէին ,
զոր եբարձ սուրբն Ներսէս . զի
զբոզոտս՝ որ ալխաակս անուանի
և զուրուկս հալածէին յանբնակ
տեղիս , զի մի յայլս փոխեսցի
ախտն . և նոքա հեռանայէին յըն-
տանութենէ և յեղբայրութենէ և
'ի հարց և յամուսնոց . և լինէր տագ-
նապ սաստիկ վասն այսր պատճա-
ռի , և բազումք լինէին գազանա-
կուրք , գետամէժք , ձիւնախեղդք ,
և անգիւտ կորնչէին : Ապա մեծն
Ներսէս ածէր զնոսա յիւրաքան-
չիւր տունս , և ոչ տայր հալածել
զնոսա որպէս զառաջինն : Եւ յետ
այսորիկ առեալ զնոսա ազդեցու-
թեամբ սուրբ Հոգւոյն և տարաւ 'ի
գաւառն Անձեւացեաց 'ի պատկեր
սրբոյ Աստուածածնին 113 , զոր էր

բերեալ առաքելոյն Բարթողոմէոսի և շինեալ զեկեղեցին 'ի նոյն տեղւոջ յանուն նորա ։ Եւ գտանէին բժշկութիւն ախտին այնմիկ, և այլոց եւս ցաւոց, և հաստատէր զուխտն 'ի տեղւոջն յայնմիկ, որ կատարէին ամ յամէ մինչեւ ցայսօր 'ի փառս Աստուծոյ. և բուժէին յախտէն բորոտութենէ ։

Եւ ինքն Ներսէս շրջէր ընդ գաւառս՝ ամս քսանեւհինգ 114, ուր էր վիճակեալ. և հաստատէր և արծարծէր զկարգս եկեղեցւոյ սրբոյ. և լինէր ուրախութիւն մեծ Հայոց ։ Եւ բազումք յայլազգեաց դառնային 'ի Հայք և լուսաւորէին աւազանաւն ։

Եւ եղեւ 'ի շրջելն Ներսէսի յամենայնից գաւառին յԱյրարատեան, հանդիպեցաւ 'ի նմին գաւառի Թագաւորահայրին Մարդպետ. և տեսեալ զդաստակերտն մեծ զոր էր տուեալ Ներսէս 'ի վանս իւր, չարակնեալ Մարդպետն ասէ. Թէ հասից առ Թագաւորն՝ յարքունիս առից զտեղիս ։ Զոր

լուեալ Ներսիսի ասէ. Վասն սպառնալոյ քո ոչ հասցես առ Թագաւորն։ Իսկ 'ի գնալն իւրում պատահեաց նմա իշխան մի յԱրծրունեաց տոհմէն, և պատճառաւ որդւոյ սպան զՀայր Մարգպետն. և կատարեցաւ բան առնն Աստուծոյ սրբոյն Ներսիսի. և ամենեքեան զարմանային ընդ արագ կատարումն բանից նորա։

Դարձեալ զի և այլ հեթանոսական օրինօք վարէին Հայք. զի 'ի վերայ մեռելոց անյուսութեամբ ցաւէին զերեսս և արեամբ ապականէին. և այնպէս յուղարկէին ըղմեռեալս։ Եւ վասն զի ընդ ընտանիս և մերձաւորս արեան ամուսնանային յազգս սեպհական ազատութեան և հայրենեաց, իսկ մեծն Ներսէս եբարձ զայն 'ի Հայոց. և հրամայեաց մինչեւ հինգ 115 ազգն ոչ ամուսնանալ։ Եւ լինէր ամենայն Հայք իբրեւ զմի անձն յաւուրս երանելոյն Ներսիսի. զի ինքն լինէր օրինակ բարեաց ամենայն աշխարհի, մշակ առանց ամօթոյ։

Է. Յետ այսր ամենայնի դուստր մի էր Անդոկեայ Սիւնեաց իշխանին, որում անուն կոչիւր Փառանձեմ, և տուաւ յամուսնութիւն Գնելոյ Արշակունւոյ եղբօրորդւոյ Արշակայ արքային և սփռէր համբաւ գեղոյ նորա ընդ աշխարհն. զի ոչ գոյր նման նմա 'ի կանայս, և համեստ և այրասէր: Արդ իբրև ետես Տիրիթ եղբօրորդին Արշակայ զհարսն իւր զՓառանձեմ, հարաւ 'ի սէր նորա. և խնդրէր հնարիւ կորուսանել զպատանեակն ըղ Գնել. զի առցէ զՓառանձեմ իւր 'ի կնութիւն: Յարեցոյց յինքն Տիրիթ և այլ չարախորհ մարդիկ, որք ստութիւն 116 մատուցանէին զառանէն առ Թագաւորն, եթէ Պատանեակն Գնել խորհի սպանանել զքեզ: Եւ Թագաւորն հաւատաց ստաբանիցն. և նիւթէր բարկութիւն 'ի սրտին սպանանել զպատանեակն Գնել. բայց ոչ իշխէր յայտնել համարձակ 'ի սրբոյն Ներսիսէ:

Իսկ յաւուր յիշատակի Կարապետին Յովհաննու, զոր էր կար-

գտեալ Լուսաւորչին Գրիգոր , ժողովեցին 'ի գաւառն Գառնոյ 'ի Ղահապիվան , և բանակին արքունի ․ ընդ նոսին ածէին և զմեծն Ներսէս յաղագս կատարման տօնին ։ Ցայնմ աւուր գայր պատանեակն Գնել ընտանեօքն իւրովք ։ Արդ իբրև լուաւ Թագաւորն առաքեաց ընդ առաջ նորա գունդս վառեալս սուսերաւորս վահանակիրք հետևակաց ․ և հասեալք ընկեցին զպատանեակն Գնել յերիվարէն , և կապեցին զձեռս յետս , և տարան 'ի տեղի սպանման ։ Իբրև ետես Փառանձեմ կին նորա , ճիչ եբարձ և ընթացաւ առ սուրբն Ներսէս՝ ուր զպաշտօնն կատարէր , և դեռ առաւօտին աղօթքն չև էր կատարեալ , և Փառանձեմ մտեալ դոյժ արկանէր զկորուստ առն իւրոյ , ձայն բարձեալ և բուռն հարկանէր զոտից սրբոյն Ներսիսի , և արտասուօք Թախայր և ասէր ․ Վա՜յ , կորեաւ անձն իմ ․ ողորմեա սուրբ քահանայապետ ․ զպատանեակն Գնել զոր դուն սիրէիր ,

զամուսինն իմ, աւանդ երկք յան-
ցանաց կորուսանել կամին. կեն-
դանի է տէր, ոչ թողից զգարշա-
պարս քո, մինչեւ ցուցցես խաւա-
րեալ աչաց իմոց զորբութեամբ ա-
մուսինն իմ զպատանեակն Գնել:
Վա՜ղ հասիր սուրբ հայրապետ,
վա՜ղ հասիր, զի զմատաղիկ ուռն
հատանեն 'ի յորթոյ. վաղ հասիր,
զի խոզխողեն զարգարն 'ի տարա-
պարտուց. վա՜ղ հասիր սուրբ հայ-
րապետ անօգնականին Գնելոյ. վա՜ղ
հասիր սուրբդ Աստուծոյ, զի դառն
անմեղ 'ի մէջ դայլոց տարակու-
սեալ անակնած 117. և ոչ գոյ հո-
վիւ զի օգնեսցէ պատանեկին. և
գաղանքն ոչ ողորմին նմա:

Իսկ սուրբն Ներսէս յարտասուս
եղեալ՝ խափանէր զպաշտօն առա-
ւօտուն, արագ ընթանայր առ թա-
գաւորն 'ի խորանն արքունի. և
Փառանձեմ բուռն հարկանէր ըղ-
հանդերձէն և զգաւազանէ նորա,
և փութացուցանէր զնա: Իսկ
սուրբն Ներսէս հրամայէր նմա
ձիալ 'ի տեղւոջն. զի մի՛ տեսեալ

զչեղեցկութիւն նորա թագաւորն՝ խափան լիցի բարեխօսութեանն վասն Գնելոյ ։ Իսկ յորժամ տեսին բանակն զՆերսէս՝ յիւրաքանչիւր խորանաց երթային 128 ընդ առաջ նորա ․ և նորա ընթացեալ ընդ մէջ նոցա՝ փութով հասանէր առ թագաւորն ։ Եւ թագաւորն դիմացեալ եթէ 'ի բարեխօսութիւն գայ վասն Գնելոյ զի մի՛ մեռցի , անդէն քող զգլխովն արկեալ քնոյ պատճառանօք դարձուցանէր զերեսն , զի մի՛ լուիցէ զբարեխօսութիւնն՝ մինչև սպանցեն զԳնել ։ Իսկ նա բուռն հարեալ զձեռաց թագաւորին յառաջ ձգէր 'ի դահոյիցն , և նա թուլանայր իբրև զմեռեալ և զաչսն խփնոյր 119 ։ Եւ անդէն յարուցեալ սրբոյն Ներսիսի ընթանայր իբրև զսուրհանդակ , զի ինքն հասցէ Գնելայ , և երիվար ձայնէր ։ Իբրև ելանէր ընդ բանակն՝ գայր հասանէր դահճապետն , մեռանէր 'ի բանակն ասելով , թէ Կատարեցաք զհրամանս թագաւորին , ես և որ ընդ իւն էին , և

սպանաք զպատուհանեակն Գնել 'ի սարակ լերինն , մօտ 'ի յորմ արգելոցի երեքոցն որոց :

Իբրեւ լուաւ մեծն Ներսէս , ուժգին տրտմութեամբ ընթացաւ 'ի խորանս թագաւորին՝ և ասէ . Անիրաւ թագաւոր , դու իբրեւ զօձի և զքարբի խցեր զականջս քո և ծածկեցեր ընդ անդամով քո ըզգլուխդ՝ որպէս նոքա , զի մի՛ սպանցին յորսողաց , զոր ոչ օգտիցին . սոյնպէս եղեր և դու և ոչ լուար ինձ և ոչ խնայեցեր յորդի եղբօր քո և 'ի ծառայակիցն և 'ի հարազատն քո : Արդ նա որ կամաւ եղեւ եղբայր մեզ՝ ոչ խնայեսցէ քեզ յաւուր նեղութեան քո : Եւ դու վասն աթոռոյ ժառանգութեան սպաներ զԳնել . արդ ձեղքեսցի թագաւորութիւն ձեր իբրեւ զխարայելին , ցրուեսցին սահմանք ձեր 'ի ձեռս օտար թշնամեաց . մատնեսջիք 'ի գերութիւն , 'ի սով և 'ի սուր , և մի՛ պակասեսցէ լուծ ծառայութեան 'ի պարանոցէ ձերմէ . և ըզվաստակս ձեր և զաշխարհս ձեր օ-

տարրք կերիցեն. և 'ի խարխափելոյ տերեւոյ փախիջիք դուք. անարգեսջիք իբրեւ զջուր հեղեալ. և 'ի լարել աղեղան տկարասջիք. ըմպել- ազգիդ Արշակունեաց գլխոյն բաժակն, արբջիք և արբեսջիք. կործանեսջիք և այլ մի կանգնեսջիք: Եւ առ ժամանակ մի ներեսցէ ձեզ Աստուած վասն աշխարհիս օգտի. ապա յետ այնորիկ բարձցէ 'ի ձէնջ զթագաւորութիւնդ ընդ նմին և զքահանայութիւնդ. և անտեսուչք 120 շրջեսջիք յաշխարհի որպէս հօտ որոյ ոչ իցէ հովիւ: Եւ դու որ սպանէր զեղբայր քո ըղ- Գնել, եւ զգործ Կայենի գործեցեր, զանէծս Կայենի ժառանգես. անկցիս կենդանւոյն 'ի թագաւորութենէդ քումմէ, և չարչարեացիս դու առաւել քան զհայրն քո Տիրան. և սպանցիս դու 'ի ձեռաց քոց իբրեւ զՍաւուղ և իբրեւ զՀերովդէ սրով և դառն մահուամբ ելցես յաշխարհէս:

Զայս ամենայն և որ սոցին նման էր՝ խօսեցաւ սուրբն Ներսէս, և

թագաւորն իբրեւ զթմբրեալ ամօթալի ընդ գետինն հայէր. և յարուցեալ մեծն Ներսէս այլ ոչ եմուտ 'ի բանակն արքունի. այլ ընթանայր շրջէր ընդ գաւառս Վասպուրականի, և հաստատէր զկարգս եկեղեցւոյ. և անտի հեռանայր 'ի 'ի Վիրս, և անդ նորոգէր եկեղեցիս յոլովս:

Իսկ ամուսինն պատանւոյն Գնելայ 'ի բանակին արքունի ձայն արձակէր և յաղի ողորմ լայր ողբովք զայր իւր, և առ հասարակ զամենեսեան ողբակից առնէր: Եւ Տիրիթն պատգամ առաքէր առ նա, թէ Մի' այլայլեր զքեզ, զի ինձ պահեսցի անձն քո: Իբրեւ լուաւ Փառանձեմ ողբս արձակեալ ասէր. Ո'վ մարդիկ լուարուք, զի վասն իմ թշուառականիս եղեւ կորուստ առն իմոյ: Եւ թագաւորն Արշակ 'ի ծիչ Փառանձեմայ եկեալ, և տեսեալ զնա՝ տրփացաւ 'ի գեղեցկութիւն նորա: Եւ Տիրիթն իբրեւ լուաւ՝ փախեաւ զի մի՛ սպանցի 'ի թագաւորէն. և նա առաքեաց զօրս

զկնի նորա , և հասեալ սպանին զնա 'ի գաւառն Տայոց ։ Եւ առ Արշակ զփառանձեմ իւր 'ի կնութիւն , և ծնաւ փառանձեմ յԱրշակայ եր- կուս որդիս . և եդ անուն առաջ- նոյն Պապ և երկրորդին Տրդատ ։

Իսկ սուրբն Ներսէս աղօթիւք սպան զսպանողսն Գնելայ , և զդա- ւողսն յետ մահուն . և ասէր այս- պէս , Թէ Ձեռք որ շաղախեցան յարիւն և լեզուք որ խօսեցան սուտ զԳնելայ առ Թագաւորն , հող օրհնութեան մի ծածկեսցէ զնոսա . այլ մնասցեն մինչև եկես- ցէ դատաւորն և արասցէ իրաւունս 'ի միջի նոցա ։ Եւ կան մարմնով մինչև ցայսօր ըստ բանի առն Աս- տուծոյ 'ի գաւառին Գաւանոյ 'ի գժուարս այրիցն 121 ։

Ը . Իսկ փառանձեմ ատեայր զԱրշակ Թագաւորն , և նազելով խօսէր ընդ նմա . և արքայն Արշակ տեսեալ զատելութիւն իւր , առա- քէ 'ի Յոյնս և ետ բերել իւր կին զքոյր Թագաւորին Վաղեսի , ո- րում անուն էր Ողոմպիա , և կա-

պեաց Թագ. ընդ նմա, և առաւել սիրէր զնա քան զփառանձեմ: Իսկ փառանձեմ ոխացեալ ընդ Ողոմպի և հնարէր կորուսանել զնա. և եգիտ իւր խորհրդակից զդրան երէցումն, որում անուն էր Մրջիմնիկ. իսկ Մրջիմնիկն գործեաց նոր չարիս. վասն զի խառնեաց զդեղ մահուն ՚ի կենաց գեղն ՚ի փրկական խորհուրդն, և ետ յեկեղեցւոջն Թագուհւոյն Ողոմպի և սպան զնա:

Իբրև լուաւ Թագաւորն զմահ քեռն իւրոյ, խորհէր պատերազմ առնել ՚ի մէջ Հայոց և Հոռոմմոց 122: Իսկ իբրև գիտաց արքայն Արշակ, եթէ թշնամիք են նորա Թագաւորն Պարսից Շապուհ և Թագաւորն Յունաց Վաղէս, յարուցեալ ինքն զօրօքն ՚ի խնդիր ելանէր մեծի կաթողիկոսին Ներսիսի յԱշտիշատ Տարօնոյ. և անկանէր Թագաւորն յոտս սրբոյն Ներսիսի, և հայցէր զթողութիւն յանցանաց իւրոց, և յայնմ հետէ գնալ ըստ կամաց նորա 123: Եւ եպիսկոպոսունք աշխարհին նորին

աղագաւ հայցելին, ընդ նոսին և իշ-
խանքն, զի մի՛ անփոյթ արասցէ
զիւրոյ վիճակէն: Եւ սրբոյն հա-
ւանեալ 'ի խաղաղութիւն դառնալ,
ապա 'ի մի հաւանութիւն եկեալ,
զի գնասցէ ինքն եպիսկոպոսա-
պետն Ներսէս այլ նախարարօքն
առ Վաղէս Թագաւորն Յունաց, զի
հաստատեսցեն զդաշինսն՝ զոր ե-
դեալ էին մեծամեծ Թագաւորացն
ընդ միմեանս, սրբոյն Կոստանդիա-
նոսի և սրբոյն Տրդատայ, և Լուսա-
ւորչին մերոյ սրբոյն Գրիգորի, ան-
խախտ կալ ընդ միմեանս:

Ապա կազմեցին պատրաստեցին
մեծամեծացն Հայոց սատրապս, և
էին այսոքիկ. Վարդան Մամիկո-
նեան և եղբայր Վասակայ. Գար-
ջող մախազն՝ նահապետն Խոր-
խոռունեաց, Մուշկան 124 նահա-
պետն Սահառունեաց, Գնել նա-
հապետն Գնունեաց, և Կեշկէն
նահապետն Բառնէից, Մեհեւան
նահապետն Անձեւացեաց, Մեհեն-
դակ նահապետն Ռշտունեաց, Սու-
րիկ նահապետն Գաբեղենից, Մեհ-

րուժան նահապետն Արծրունեաց , Բագրատ նահապետն Բագրատունեաց , Վրէն նահապետն Վրաց , Խուժէն 125 նահապետն Ծոփաց , Սպանդիատ 126 նահապետն Մելեանենից , Ծամակ նահապետն Հաշտենից , Մագուգ նահապետն Ատրպատականի , Վզրուկ նահապետն Բասենոյ , Ռեդէս նահապետն Վրաց , և Հայր Մարդպետն : Սոքա ամենեքեան չոգան դեսպանութեամբ ընդ մեծին Ներսեսի 'ի կայսերական պալատն՝ սիրոյ աղագաւ և զդաշինսն հաստատելոյ , որ էր ընդ Հայս և ընդ Հոռոմս :

Իսկ Թագաւորն Վաղէս զառաջինն մեծարեաց յոյժ զնախարարսն Հայոց մեծաց , և եդ զաթոռ մեծին Ներսեսի 'ի վեր քան զմետրապոլտացն և քան զպատրիարքսն , վասն բարենշան առնն Աստուծոյ սրբոյն Ներսեսի . և օր ըստ օրէ յաւելոյր 'ի սէր և 'ի պատիւ : Բայց էր Թագաւորն Վաղէս խմորեալ անհնարին հերձուածով ըստ Արիոսի , ոչ խոստովանելով զՈրդի

հաւասար Հօր, և ոչ ծնեալ 'ի Հօրէ յառաջ քան զյաւիտեանս. այլ օտար և արարած և կրտսեր և յետ ժամանակի գոյացեալ. և ըզսուրբ կոյսն Մարիամ՝ ոչ աստուածածին՝ այլ մարդածին՝ ըստ հոգէմարտին Մակեդոնիսի, որ ոչ տէր խոստովանէր զՀոգին սուրբ և ոչ երկրպագելի և ոչ փառաւորեալ ընդ Հօր, և ոչ էութիւն անձնաւոր, այլ օտար 'ի բնութենէ Աստուծոյ Հօր, և ստացական և ծառայ և պաշտօնեայ և ազդումն ինչ:

Իսկ որդի մի էր Վաղէսի որում անուն էր Տրայիանոս, որ նա միայն գտանէր ժառանգ թագաւորին յազգի իւրում. և այնուհետեւ դնէր յախտ հիւանդութեան սաստկապէս: Եւ թագաւորն ստիպէր զսուրբն Ներսէս՝ զի աղօթս արասցէ 'ի վերայ մանկանն զի մի մեռցի. իսկ սուրբն Ներսէս ասէ ցթագաւորն, թէ խոստովանիս զՈրդի՝ Աստուած յԱստուծոյ ծընեալ և ոչ արարեալ, և յառաջ քան զյաւիտեանս ընդ Հօր, և

յետ ժամանակի ծնեալ 'ի Մարիա-
մայ կուսէ , և միշտ սուրբ և աս-
տուածածին զկոյսն , և զՀոգին
սուրբ կատարեալ անձն , և միաւո-
րեալ Երրորդութիւն , և Աստուած
փառաւորեալ ընդ Հօր և ընդ Որ-
դւոյ . և թողցես զչար հերձուածդ ,
այնուհետև առողջասցի որդին
քո . և եթէ 'ի նոյն յամառեալ
կաս , ես ինքն աղաչեցից զտէր , զի
յառաջ քան զկարգեալ սահմանն
վախճանի իւրոյ՝ բարձցի 'ի կենաց ։
Իսկ Թագաւորն Վաղէս պնդեալ
կայր 'ի նոյն հերձուած , և ասէ .
Կացից մնացից 'ի նոյն հաւատս .
բայց դու որ իշխանութիւն ունիս
մահուան որդւոյն իմոյ , իշխանու-
թիւն ունիս և կենաց , կեցո՛ զորդին
իմ զի մի՛ մեռցի ։ Եւ նա ասէ ցնա .
Տաց նմա ողորմութիւն աւուրս
հնդետասանս , զի դու ապաշխա-
րեալ դարձցիս 'ի չար ամպարշտու-
թեան հերձուածոյդ և յաղան-
դոյդ , և ապրեսցի որդին քո ։ Իսկ
Թագաւորն ոչ զղջացեալ եղեւ 'ի
չարէն ։ Եւ յետ աւուրց հնդետա-

սանից վախճանեցաւ մանուկն. և սգացին զնա սուգ մեծ: Ապա ածեալ թագաւորն ասէ ցսուրբ քահանայապետն. Յարո՛ 'ի մեռելոց զմանուկն իմ. ապա թէ ոչ և դու ընդ նմին մեռցիս: Ասէ ցնա սուրբ հայրապետն. Իմ բանքս այս են ընդ քեզ, զի 'ի բաց կացցես 'ի հերձուածոց քոց, և ես յայսմ աւուր կենդանի կացուցեալ ածից զորդին քո առաջի քո:

Եւ նա ոչ լուաւ նմա. այլ հրամայեաց կապել զսուրբն Ներսէս երկաթի կապանօք և արկանել 'ի բանդ, և 'ի տեղւոջն սպանանել զնա չարչարանօք: Ապա ժողովեալ առ թագաւորն մեծամեծք քաղաքին՝ ասեն. Լուեալ է մեր յեկելոցն ընդ առնն ընդ այնորիկ. եթէ ազգական և հարազատ է թագաւորին իւրեանց այրս այս. և աշխարհն իւրեանց սիրեն զնա առաւել քան զթագաւորն. և թագաւորն յաղագս սիրոյ և խաղաղութեան է առաքեալ առ քեզ. և դու սպանանե՞ս զնա. և ապա պատե-

րազմ մեծ յարիցէ ընդ մեզ 'ի Թագաւորէն Հայոց : Այսէ Թագաւորն ցնորսա . Դու ինքնին և առ իւրեանց Թագաւորն վնասակար է և մահապարտ . և առաքեաց առ իս Թագաւորն իւրեանց՝ զի մեռցի 'ի ձեռաց իմոց . և ինքնդ կամօք իւրովք Թշնամանեաց զիս , և սպան զորդին իմ :

Իսկ սուրբն Ներսէս կացեալ առաջի Թագաւորին ասէ . Ես մեռանիմ վասն անուան տեառն իմոյ 'ի ձեռաց քոց . բայց 'ի նմին ամի և դու կորիցես անհերեւոյթ սրով . և առցի Թագաւորութիւնդ քո առն միոյ՝ որ արասցէ զկամս Աստուծոյ իմոյ : Իսկ Թագաւորն լի ցասմամբ հրամայեաց աքսորել զսուրբն Ներսէս 'ի կղզի մի յանբնակ և հեռաւոր հանդերձ եօթանասուն և երկու արամբք եկեղեցականօք , զի անդէն մեռցի : Եւ յայն կղզւոջն ոչ կայր Ճանապարհ նաւի , և ոչ արմատ ինչ դալարւոյ և ոչ ջուր . բայց միայն աւազ : Եւ կացին անդ իբրեւ ամսօրեայ աւուրս . ապա սկսան

նքողէլ 'ի սովոյ և 'ի ծարաւոյ․ անկանէին առաջի առնն Աստուծոյ սրբոյն Ներսիսի, զի հնար լիցի նորա զերծանել յայնմ տառապանաց ։ Իսկ սրբոյն Ներսէսի կացեալ յաղօթս նոքօք․ և իբրև կատարեաց զաղօթսն, յարուցեալ հողմ 'ի ծովուն և սկսաւ ընկենուլ ձուկն սաստիկ 'ի կղզին՝ իբրև ըզշեղջս, ընդ նմին փայտ և աղ․ և փայտն ինքնին լուցանէր առանց հրոյ ։ Ապա յաղօթս եկաց սուրբըն Ներսէս ամենեքումբք և փորեաց ինքնին զաւազն, և ելանէր ջուր քաղցրահամ, որ կայ մինչև ցայսօր ։ Եւ այնու կերակրեալ լինէին օրըստօրէ ընդ երեկս ։ Իսկ սուրբն Ներսէս ճաշակէր յաւուրս հնգետասան ։ Եւ կային 'ի կղզւոջն ամիսս ինն ։

Իսկ Թագաւորն Վաղէս զիշխանսն որ էին ընդ մեծին Ներսիսի մեծ անուամբ, գանձիւք և ակամբք պատուականօք և անչափ մեծութեամբ՝ արձակէ առ Թագաւորն Հայոց մեծաց Արշակ ։ Իսկ իշխա-

նացն մեռեալ առ թագաւորն Վաղէս ասեն, թէ Անպարտք եմք մեք յաղագս քահանայապետին մերոյ զոր կորուսեր, եթէ պատերազմ յարիցէ ընդ մեզ և ընդ ձեզ։ Եւ գրեաց թագաւորն Վաղէս առ Արշակ, թէ Զորդին իմ զաթոռակիցն իմոյ թագաւորութեանս սպան Ներսէս. և զիս յանդիման մեծամեծաց իմոց անարգեաց իբրեւ զըստրուկ մի. յաղագս այսպիսի պատճառանաց եղեւ կորուստ նորա. զի մահապարտ էր նա։ Արդ մի՛ լիցի մեղադրանք եղբայրութեանդ քո վասն նորա. զի թէ ընդ քեզ էր արարեալ զգործն զոր արար ընդ իս, դու էիր քոյին ձեռօքդ վրէժխնդիր լեալ սմա։ Եւ կուտէր զամենայն մխաս 'ի վերայ սրբոյն Ներսիսի. և այնու կամէր զմիտս հաճել զթագաւորին Արշակայ։

Եւ առեալ իշխանացն որ էին ընդ մեծին Ներսիսի զեսպանութեամբ՝ զթուղթն Վաղեսի և անչափ գանձս, հասանէին յաշխարհն Հայոց առ Արշակ։ Իբրեւ լուաւ

զկորուստ մեծին Ներսեսի՝ բարկութեամբ լի եղեւ. և առեալ ըզգանձսն՝ ցիր և ցան ընկենոյր 'ի խորանսն։ Եւ հրաման տայր Վասակայ զօրավարին Հայոց տեառն Մամիկոնէից՝ գունդս պատրաստել, զօրս կազմել, խաղալ գնալ 'ի վերայ աշխարհին Յունաց։ Եւ Վասակ Մամիկոնեան գնացեալ յաշխարհն Հոռովմոց՝ զբազում ամրոցս անմատոյցս հիմն 'ի վեր տապալէր. և առեալ զաւառ և զապուռ, և երթեալ իջանէր յեզր ծովուն՝ 'ի տեղւոջ մի որ կոչի Խուսուպօլիս 125. և 'ի նեղութիւն ածեալ զքաղաքն՝ ոչ տայր ելեւմուտ առնել։ Եւ Հռովմայեցիքն ոչ ելանէին 'ի պատերազմ ընդ Հայոց վասն դաշանցն Կոստանդիանոսի և մեծին Տրդատայ։ Իսկ այլ զօրքն Յունաց՝ որ առ Վաղեսի էին, ամենեւին ոչ իշխէին ելանել՝ վասն կորովութեանն Վասակայ։ Իսկ կայսրն Վաղէս նեղեալ 'ի քաղաքացւոցն՝ խոյս ետ եւ գնաց յԱդրիանուպօլիս։ Եւ Նեքտառիոս պատրիարքն այլ եւս մեծամեծօքն եւ առ

Վասակ և առ զօրան Հայոց. և եզեալ ուխտ ընդ նոսա հաւանութեան, զի մի՛ այլ աւերեսցեն զերկիրն, այլ դարձցին սիրով յաշխարհն իւրեանց: Եւ յետ ութ ամսոյ դարձաւ զօրավարն Վասակ զօրօքն Հայոց և բազում աւարաւ առ Արշակ:

Յետ այսորիկ տեսանէր Վաղէս յանուրջսն զսուրբն Ներսէս, զի սրով փողոտէր զնա և ասէր. Բառնամ զքեզ 'ի կենաց, զի բազում լուսաւորս խաւարեցուցեր յերկրի. և պատմեաց Թագաւորն զտեսիլն, և նոքա ցնորք համարէին: Իսկ 'ի նմին աւուր հրկէզ եղեալ ամպարիշտն Վաղէս՝ սատակեցաւ իբրև շշուն. և ոմանք ասեն՝ եթէ աներևոյթ սրով: Յետ այսորիկ նստուցանեն յաթոռ թագաւորութեանն զԹէոդոս, որ էր ուղղափառ հաւատով: Եւ տեսեալ նաւավարայն զլոյս կրակին 'ի կղզւոջըն՝ յորում էր սուրբն Ներսէս, և գիտացեալ Թէոդոս թէ կենդանի է մեծ քահանայապետն Ներսէս.

և վաղվաղակի ածեալ առ ինքն և եդ զաթոռ մեծին Ներսիսի 'ի վեր քան զամենայն եպիսկոպոսացն որ ժողովեալ էին և զպատրիարգին եւս, որ վասն հոգէմարտին Մա-կեդոնիի էին գումարեալ: Եւ մեծ փառօք և շքով և մեծարանօք և պա-տուով յղարկէր Թագաւորն Թէո-դոս զսուրբն Ներսէս յաշխարհն Հայոց մեծաց:

Թ. Իբրեւ լուաւ Թագաւորն Արշակ՝ կարծեցեալ զնա 'ի մեռե-լոց յարուցեալ, ընդ առաջ ելանէր նմա զօրօքն. և մեծ ուրախութիւն լինէր գալ նորա աշխարհին Հայոց. և նորոգէր աթոռ սրբոյ առաքելոյն Թադէոսի և վիճակ Լուսաւորչին Գրիգորի: Եւ լինէր ամենայն Հայք յաւուրս մեծին Ներսիսի՝ իբրեւ զմի այր կատարեալ առաքինու-թեամբ. և մուրող ոչ ոք տեսանէր յաւուրս նորա. զի 'ի հիւանդա-նոցս կարգէր զպէտս աղքատաց:

Եւ իբրեւ հեռացեալ էր սուրբն Ներսէս 'ի Յոյնս, արար չարիս մե-ծամեծս Արշակ. տեսեալ հովիա

մի վայելուչ՝ ետ հրաման շինել զնա քաղաք. և անուանեաց զնա Արշակաւան. և ետ պատուէր ընդ աշխարհն և ասէ. Թէ ոք ուրուք պարտիցի ինչ, կամ զուրուք կին յափշտակիցէ, կամ ծառայս կամ զանձս կամ զձիս կամ զջորիս, կամ զկարասիս, կամ զինչ հաձոյ թուեսցի մարդոյ 'ի վերայ երկրի, և առեալ անկանիցի անդ, զատ և իրաւունք յարքունուստ մի լիցի: Եւ տայր յանպատշաճ տեղւոջ կամուրջ արկանել և նոյնպէս առնել: Եւ շատացաւ քաղաքն սաստիկ յոյժ, և լցաւ անիրաւութեամբ. զի անդ ժողովեցան աւազակք և սպանողք և գերողք և գերեզմանակրկիտք, և լի էին չարեօք, և տային շահս բազումս Արշակայ:

Իբրեւ լուաւ զչարիսն սուրբն Ներսէս, որ անցին ընդ Հայք, լի տրտմութեամբ մտանէր առ թագաւորն, և յանդիմանէր զնա վասն Արշակաւանին և ասէր, թէ Վա՜յ որ շինէ զտուն իւր և ոչ իրաւամբք. զի թէպէտ և ապարանք մեծամեծք

էցեն և գեղեցիկք, սակայն յաւէր դարձցին ։ Եւ արդ տուր հրաման քակել զնա, և թող ցրուեսցին յիւրաքանչիւր տեղիս. և ես շինեցից իմով ձեռամբ քեզ այլ քաղաքս, որ տացէ շահս եւթնպատիկ յարքունի ։ Իսկ թագաւորն ծիծաղեալ զխրատով նորա՝ ոչ լուաւ նմա ։ Իսկ սուրբն Ներսէս ասէ ցթագաւորն. Փոխանակ զի ոչ լուար ինձ, մի լուիցէ քեզ Աստուած յաւուր նեղութեան քո. և որպէս ոչ ողորմեցար տառապեալ և անապաւինորդ աշխարհիս Հայոց՝ 'ի հեռանալն իմում 'ի Յոյնս, մի ողորմեսցի քեզ տէր յաւուր անձկութեան քո. և որպէս բարձեր զխրատունս 'ի չարչարեալ յաշխարհէս Հայոց, բարձցի թագաւորութիւնդ յազգէդ Արշակունեաց, և լինիցիք ստրուկք նախարարաց Հայոց. և զրկեալն 'ի ձէնջ զրկեսցէ զձեզ. և դարձուսցէ արարիչն զերեսս իւր յազգէդ յայդմանէ, մինչեւ 'ի մերձենալ պղծոյն անապատի ։ Եւ զվայելուչ աշխարհդ

ձեր առաջի ձեր օտարք կերիցեն ։ Եւ դու Արշակ յօտար երկիր լեցիս դաշինս անձին քո ըստ օրինակի Սաւուղայ և Հերովդի ․ զի տէր եցոյց ինձ ։ Եւ փոխանակ զի գործեցեր նոր չարիս , նոր իմն ցաւս առաքեսցէ Աստուած յանխրաւ քաղաքն քո ․ և ոչ մնասցէ 'ի նմա քար 'ի քարի վերայ՝ որ ոչ քակտեսցի ։

Եւ այլ բազում՝ բանիւք յանդիմանէր զԹագաւորն սուրբն Ներսէս ․ և ել լի ցասմամբ յերեսաց նորա ։ Եւ ելանէր մեծն Ներսէս 'ի տեղի մի յանապատ , և կացեալ անդ յաղօթս , մատնեաց Աստուած զանխրաւ քաղաքն 'ի հարուածս ․ զի ելանէր կէզ ժանդադոյն 'ի մարդ և յանասուն , և առժամայն սատակէին ․ և անուանեցին զցաւն զայն ժանգ՝ մինչեւ ցայսօր ․ և ութեւտասն հազար երդս անմարդ լինէր ․ և յանկարծակի լինէր շարժ մեծ , և զամենեսեան առ հասարակ սատակէր ․ և ոչ եւս երեւէր ուրեք նըշմարանք , ոչ քարի և ոչ փայտի , որ եթէ լեալ իցէ շէն 'ի տեղւոջն ։

Յետ այսորիկ հեռանայր սուրբն Ներսէս յաշխարհէս Հայոց, և հասանէր 'ի քաղաքն Ուրհայ: Իբրև լուաւ արքայ Արշակ զհեռանալ սրբոյն, եգիտ զոմն 'ի դրան քահանայից իւրոց, որում անուն էր Չունակ. և կոչեաց զեպիսկոպոսունս աշխարհին՝ զի ձեռնադրեսցեն զնա եպիսկոպոսապետ Հայոց. և ոչ հաւանեցան նմա եպիսկոպոսունքն. բայց միայն եպիսկոպոսն Գառնոյ Գէորգ, և եպիսկոպոսն Աղձնեաց Տաճատ, և եպիսկոպոսն Անձեւացեաց՝ Սիմէոն. և ձեռնադրեցին զՉունակ յաթոռն Ներսիսի կաթողիկոս Հայոց: Եւ նա ոչ իշխէր յանդիմանել զթագաւորն, այլ հաւանեալ կամաց նորա 'ի հարկէ:

Ժ. Յետ այսորիկ ապստամբեցին յԱրշակայ նախարարքն Հայոց և կուսակալք և սեպուհք և տանուտեարքն, և այլ խառնաղանջքն: Իսկ թագաւորն Արշակ գնաց ակամայ առ Շապուհ արքայն Պարսից, ընդ նմին և Վասակ Մամիկոնեան

երեք որդւովք, որոց անուն էր ա-
ռաջնոյն՝ Մանուէլ, և երկրորդին
կոն. և անդրանիկն գնաց փախըս-
տական յՍւրհայ առ Ներսէս, և
անուն նորա Մուշեղ քաջ։ Իսկ
զարքայն Արշակ մեծարեաց զառա-
ջինն Շապուհ արքայն Պարսից.
ըստ նմին և զՎասակ Մամիկոնեան։
Եւ 'ի միում աւուր շրջէր Արշակ 'ի
վայրս, տեսանել զերիւարս թա-
գաւորին Շապհոյ. և ամիրայ մի
ախոռապետ Շապհոյ՝ առէր ծիծա-
ղելով. Նիստ արքայ Հայոց 'ի վե-
րայ խրձան խոտոյ։ Եւ Վասակ
Մամիկոնեան հանեալ զսուսերն
պողովատիկ՝ ասէ. Ա՞յդպէս խօսիս
ընդ արքայի. և զարկեալ յուս նո-
րա՝ զկէս նորա յերկիր ընկենոյր։
Իբրեւ ետես Շապուհ՝ զարմացաւ,
և գովեաց զՎասակ վասն տիրասի-
րութեան նորա։ Յետ այսորիկ
հարկեալ և հաւանեալ դիւթաց և
նենգաւոր մարդկան Շապուհ՝ ետ
կապել զԱրշակ և տանել 'ի Խու-
ժաստան՝ յԱնուշն կոչեցեալ բերդ.
և անդ Արշակ սպան զինքն սրով.

իւրով, ըստ նմանութեան Սաւու֊
ղայ և Հերովդի. և կատարեցաւ
բան առնն Աստուծոյ Ներսիսի 'ի
վերայ նորա: Իսկ զՎասակ հրա֊
մայեաց սպանանել 'ի բանդին. իսկ
զորդիսն զՄանուէլն և զԿոմսն և
զՀամազասպ, ետ կարգել 'ի դուռն
հրամանատար արքունի:

ԺԱ. Իբրև լուաւ մեծն Ներ֊
սէս զմահն Արշակայ, գնաց առ
Թէոդոս Թագաւորն Հոռոմոց, և
Թագաւորեցոյց զՊապ 'ի տեղի
հօր իւրոյ Արշակայ. և զՄուշեղ
քաջ 'ի տեղի հօր իւրոյ Վասա֊
կայ: Եւ առեալ զօրս 'ի Թէոդո֊
սէ Թագաւորէ՝ գայր 'ի Հայս:
Եւ գայր կուտէր 126 ամենայն ցր֊
ուեալքն Հայոց առ եպիսկոպոսա֊
պետն Ներսէս և առ Թագաւորն և
առ զօրավարն. և լինէր ուրախու֊
թիւն յաւուրսն 126 մեծ յոյժ:
Իսկ Շապուհ արքայն Պարսից գայր
հասանէր յաշխարհն Հայոց կնաւ
և ամենայն ուժով իւրով. և առրու֊
շանս չլինէր յեկեղեցիսն Հայոց և
Վրաց:

Եւ Մուշեղ որդի Վասակայ զօրավարին Հայոց՝ հանդէս առնէր զօրաց իւրոց, և լինէր քառասուն հազար. և զզէնն իւր բերէր առ Ներսէս և օրհնէր 'ի նմանէ. և պատրաստէր ընդ առաջ Շապհոյ։ Եւ ոչ մնաց 'ի զօրացն Հոռոմոց օգնական Հայոց։ Եւ Մուշեղ սպարապետն Հայոց անկանէր 'ի վերայ զօրացն Պարսից, և գործ 'ի ձեռն առեալ զխաթաւալ կացուցանէր զնոսա։ Եւ Շապուհ այլափոխեալ զինքն միով երիւարաւ փախստական լինէր։ Եւ Մուշեղ Մամիկոնեան առեալ զաւագ Թագուհին զՍիթիլհոռակ զկին Շապհոյ արքային և զայլ կանայս նորա, և առեալ հարիւր սալարս մորթէր և լնոյր խոտով, և տայր բերել առ Պապ։ Իսկ զկանայս Թագաւորին Շապհոյ՝ պահէր և ոչ տայր մերձենալ առ նոսա անկողնօք. և տայր տանել առ Շապուհ։ Եւ ինքն շրջէր աւերէր զկրակատունսն որ 'ի Հայք։ Իսկ Շապուհ իբրև ետես զկանայսն՝ զարմացաւ, և մեծ շնոր-

հակայ լինէր Մուշեղայ . և էր ձին Մուշեղայ սպիտակ . և Շապուհ ետ նկարել զՄուշեղ 'ի տախտակի . և յարուցեալ 'ի ժամ ճաշոյն ընդդէմ նորա ըմպէր զգինին և ասէր , փառաց ճերմակ ձիոյն : Եւ զայս առնէր Շապուհ՝ զի զկանայս նորա արձակեաց առ նա անխառնակ և անգիրն :

Իբրև լուաւ Պապ թէ զկանայս Թագաւորին Պարսից՝ Մուշեղ արձակեաց առ նա և ոչ էած առ ինքն , խորհեցաւ սպանանել զնա . բայց ոչ համարձակէր վասն որբոյն Ներսիսի : Յետ այսորիկ 'ի Թիկունս կոչէր Թագաւորն Պարսից Շապուհ զԹագաւորն հոնաց զՍւանայր , և բանայր զդուռն Ալանաց . և ժողովեցան առ նա զօրքն հոնաց և Մազքթաց և Ագուգաց , և Լփնաց , Թաւմատկաց 127 և Գուբուրէից , Ճմահաց , Գուգարաց , Ուզաց , Ճուճաց , Շղբաց , Մաղազճաց , Գերաց , Կուանաց , և այլ խառնաղանջ զօրացն Պարսկաց անթիւ յոյժ , և այլ անքնակ զօրաց լեռ-

նականաց Քուրդէից : Եւ եկեալ միաբան լցին զդաշտս Ատրպատականի , և տարածեցան ընդ աշխարհն Հայոց : Եւ առնէր Թագաւորն Հոնաց ցԹագաւորն Պարսից . Ընդ Մուշեղայ ես ելից ախոյեան իմոյ գնդաւս . և դու Արեաց գընդաւդ Ճակատեա՛ ընդդէմ Հռովմոց գնդին : Իբրեւ լուաւ Մանուէլ Մամիկոն եղբայր Մուշեղայ քաջի , ասէ ցնա . Գիրկս արկեր զբազում փշով , թէ ժողովեա՛ մանուկ ես : Եւ ինքն յղէր առ Մուշեղ եղբայր իւր զխորհուրդս Թագաւորացն : Ասէ Մուշեղ . Վստահ եմ յաղօթս սրբոյն Ներսիսի , զի նկուն լիցի փքալ գոցա : Եւ պատուէր տուեալ զօրացն Պարսկաց և Հոնաց , զի զզօրսն Հռովմոց ձերբակալ արասցեն և տարցեն յաշխարհն իւրեանց 'ի գործս տպարանաց և բերդից . իսկ զզօրսն Հայոց յանխնայ կոտորեսցեն . զի մի՛ ոք մնասցէ 'ի Հայոց և աշխատ արասցէ զմեզ պատերազմաւ :

Եւ ժողովեցան զօրքն Հայոց և

Հոռոմոց 'ի գաւառն Նպատակ առ
Պապ Թագաւորն Հայոց. ընդ նո-
սին ածաւ և սուրբ եպիսկոպոսա-
պետն Ներսէս: Իսկ Պապ չտայր
մտանել 'ի պատերազմ Մուշեղայ
Մամիկոնենւոյ, ասելով. թէ Վան
աւուրս այսորիկ եթող Մուշեղ
զկանոնայն Շապհոյ, զի ապստամ-
բեալ 'ի մէնջ առաւել կորուստ
գործիցէ զօրաց մերոց քան զթշ-
նամիս մեր: Իսկ Մուշեղ անկանէր
յոտս սրբոյն Ներսիսի և բարեխօս
ունէր և միջնորդ. և բուռն հար-
կանէր զաջոյ նորա և սաստիկ երդ-
նոյր և ասէր, եթէ Ոչ անկեալ
խորհուրդ այդ 'ի միտս իմ զոր
կարծէքդ: Եւ ասէ սուրբն Ներ-
սէս ցՊապ. Ես եմ տէր ձեռաստուգո-
րա յայսմ աւուր: Եւ ապա լուեալ
Թագաւորն հրամայեաց նմա մտա-
նել 'ի պատերազմ: Իսկ սուրբն
Ներսէս հսկէր զգիշերն նոքօք համ-
գերձ. և մատուցանէր պատարագ
և հաղորդեցուցանէր զարժանա-
ցեալսն մարմնոյ և արեան տեառն:
Եւ քաջն Մուշեղ բերեալ զզօր-

ծիոյն պատերազմի՝ զզէնսն առ-
սուրբն Ներսէս, զի նա զգեցուցէ
զնա : Եւ բերէին ամենայն զօրա-
վարքն Հայոց և Հոռոմոց առ
սուրբն Ներսէս՝ զի տէառնագրես-
ցէ զզէնսն. և նորա տէառնագրեալ
զզէնս նոցա և օրհնէր զնոսա : Իսկ
Մուշեղ առնոյր զգաստառակ սըր-
բոյն Ներսիսի և 'ի գեղարդն իւր
կապէր, և յառաջ խաղայր 'ի գործ
պատերազմին : Եւ սուրբն Ներսէս
ելանէր 'ի գլուխ լերինն Նպատայ,
և համբարձեալ զսուրբ ձեռս իւր
յերկինս անխոնարհելի յաղօթս
կայր առ Աստուած :

Իսկ Մուշեղ զօրավարն վառէր
զգունդն Հայոց ընդդէմ գնդին
Հոռոմոց, և յառաջէր քան զնոսա
'ի զօրս Թշնամեացն. և որպէս
զհուր փոթորկեալ յեղէգն՝ ձեղ-
քէր զզօրսն Պարսից և զՀոնաց :
Իսկ իբրև ետես Պապ՝ եթէ ծած-
կեցաւ նշանն Մուշեղայ՝ ասէ ցը-
սուրբն Ներսէս. Վա՜յ, դու ետուր
կոտորել զզօրսն Հայոց՝ գաղանին
Մուշեղայ : Ասէ սուրբն Ներսէս

ցԹագաւորն. Մի կարծեր, ով Թագաւոր, այդպիսի վասն տիրասէր ազգին Մամիկոնէից և աննենգ. այլ տեսցես յայսմ աւուր զքաջութիւն նորա: Եւ ասէ Պապ ցսուրբն 'Ներսէս. Ստէպ աղօթեա առ Աստուած. 'ի ձայն մաղթեա ով սուրբ քահանայապետ: Եւ նորա համբարձեալ զձեռսն ուժգին հառաչմամբ և ասէր.

Տէր Աստուած զօրութեանց, նայեաց յաղօթս իմ վասն փառաւորեալ անուանդ քո. զի Թէպէտ և լցէ անօրէնութիւն յաշխարհիս Հայոց, դու կարող ես խրատել յիւրաքանչիւր տեղիս. բայց յաւուրս յայսմիկ մի դարձուցաներ զերեսս քո 'ի մէնջ, այլ խնայեա 'ի ժողովուրդս քո՝ զոր գնեցեր արեամբդ քո սրբով: Դարձիր 'ի բարկութենէ և փրկեա զմեզ յարժանահաս նեղչաց մերոց, բարեխօսութեամբ Թադէոսի առաքելոյն վիճակողի սորա, և խնդրուածովք նախնոյն մերոյ լուսաւորչին զնոսա. և մի կար 'ի հեռաստանէ և

անտես առնէր զմեզ ։ Զի Թէպէտ և բազում անգամ մեղանչեմք , դու ես տէր Աստուած մեր · զայլ ոք ոչ գիտեմք բայց 'ի քէն սուրբ Երրորդութիւն · ողորմութեամբդ քով խրատես զմեզ , և անօրինաց մի մատներ ։ Զսրբութիւնս քո կործանեցին , և զհաւատացեալս 'ի քեզ անարգեցին · ահա մեծաբանեալք հեթանոսք , ուր է Աստուած նոցա · ամենակարող և նախանձոտ տէր , լուր և ողորմեա մեզ 128 ։ Տէր 'ի քաղաք քո գթասցիս վասն մեծի ողորմութեանդ , և զաշխարհս քո մի անտես առնէր քո գթութեամբդ · մարդասէր , կեցո զժողովուրդս քո որ արդարապէս խրատես , աղաչանօք սուրբ Աստուածածնիդ , միայն կարող Փրկիչ ողորմեա ։ Եւ դարձո զսուր նոցա յինքեանս և զաղեղունս նոցա յետս · ընկեա զնոսա գէշս , զի յագեսցին գազանք անապատի և Թռչունք օդապատառք ։ Դարձո զօգնութիւն 'ի սրոյ նոցա , և նկուն արա զնոսա և ամաչեցեալ · արբո

նոցա յայսմ աւուր զբաժակ կո-
րստեան և տուր ըմպել նոցա ըզ-
արտմութիւն քո: Լեր բազուկ և
կորովութիւն ընտրեալ ազգի քո
քրիստոնէից՝ զոր յանուն քո ա-
նուանեցեր. երեւեցո զզօրութիւն
քո յայսմ աւուր որպէս զօրավա-
րին Յեսուայ. և վանեա զթշնամիս
մեր, և զամրութ̃ն զինուց նոցա ըստ
կործանմանն Երեքովի. ըստ դա-
րուցն եւթներորդի հանգստեան շա-
բաթուցն. և մանրեա զնոսա որպէս
բազմութ̃ն մարախոյ 'ի դուրս Ջուրց.
և անցո զմարգիկ 'ի վերայ գլխոց
նոցա: Հան զսուր աներեւոյթ 'ի
պատենից քոց և սատակեա զնոսա.
և զանքուն ակն քո՝ անողորմ դարձո
'ի նոցանէ: Յայսմ աւուր առաքեա
զհրեշտակ քո որպէս յաւուրսն
Եզեկիայ և ջնջեա զնոսա. զի դարձ-
ցին ամօթովք մնացեալքն որպէս
Սենեքերիմայն 'ի հնումն. և արա
զօրս զայս նշան յաւիտենական. զի
ծանիցեն յարուցեալքս 'ի վերայ
մեր, թէ դու Աստուած քրիստո-
նէից. և արա շինութիւն աշխար-

հէս Հայոց կործանմամբ Թշնամեացս ։ Յայտնեա զանուն քո անօրինացս , որ խորտակալով զան 'ի վերայ մեր . և արա զնոսա հալածական 'ի մէնջ . և հաստատեա զխոստումն ըստ առաջին գրեցելումն , թէ Մինն զհազարսն հալածեսցէ , և երկուքն զբեւրսն շարժեսցեն . որ պահեսցեն զպատուիրանս քո . այլ դրոշմեալ եմք աստուածային կնքով քո՝ զոր աւազանաւն դրոշմեցաք . ըղձանձս հոգեւորաշահ փարթամութեանն յորդեգրութեան ժառանգութեան Հօրդ երկնաւորի ։

Արդ մի որոշեր զմեզ 'ի հայրենական խնամոց քոց , և մի բեկցի դրոշմ հոգեւոր գանձի ծածկելոյ յանձինս մեր . զի յոյս ակնկալութեան մերոյ չէք՝ բայց 'ի քէն տէր Աստուած մեր ։ Գթա տէր յայսմ աւուր փրկեալ զժողովուրդս քո . մի մեզ , այլ անուան քում տուր զփառս ։ Մի ասասցեն անօրէնք թէ ո՞ւր է Աստուած նոցա ։ Արի տէր օգնեա մեզ և փրկեա զմեզ վասն անուանդ քո . զի վասն քո

մեռանիմք զօրհանապազ . համարեցաք որպէս զոչխար 'ի սպանումն : Զարթիր , ընդէ՞ր ննջես տէր , արի և մի մերժեր զմեզ իսպառ . զմէ՞ դարձուցանես զերեսս քո 'ի մէնջ , մոռանաս զաղքատութիւն և զնեղութիւնս մեր : Խոնարհեցան մինչեւ 'ի հող անձինք մեր և յերկիր մածեան մէջք մեր : Աստուած , յանուան քում կեցո զմեզ, և 'ի զօրութեան քում իրաւ արա ինձ : Աստուած լուր աղօթից իմոց , ունկն դիր բանից բերանոյ իմոյ : Օտարք յարեան 'ի վերայ իմ և հզօրք խնդրեցին զանձն իմ և ոչ համարեցան զքեզ Աստուած առաջի իւրեանց : Ահա Աստուած օգնական իմ և տէր ընդունող հոգւոյ իմոյ : Եւ օրհնեա անձն իմ զտէր , մինչեւ թագաւորեսցէ տէր յաւիտեան :

Արդ զայս և որ սոցին նման է՝ 'ի ձայնս արկեալ զանազան եղանակօք և հառաչմամբ 'ի դուռն ածէր զբարեգութն Աստուած : Իսկ զօրացն յիրեարս խառնեալ՝ քաջս ընդ

քաջս եղանէին . և իբրև զձայն ուռանց դարբնաց և զճայթիւն մայրևորաց՝ լսելի լինէին . և 'ի սաստկանալ մեծի պատերազմին՝ 'ի փախուստ դարձուցանէին զզօրսն Ալանաց և Պարսկաց և Ուզաց և Մասքթաց՝ գունդն Հայոց : Եւ իբրև խոնարհէր ձեռք սրբոյն Ներսիսի , զի տեղի առնուին փախըստականքն և ընդդիմանային զօրացն Հայոց . և իբրև համբառնայր սուրբն Ներսէս զձեռսն , ցիրեւցան լինէին զօրքն անօրինաց առաջի զօրացն Հայոց : Եւ անախ փոխթորկեալ զօրքն Հայոց զկնի փախըստէիցն , սուր 'ի վերայ եդեալ առ հասարակ սատակէին զանօրէնսն :

Եւ Շապուհ արքայն Պարսից իջեալ յերիւարէն և այլափոխեալ զզգեստն և 'ի գարափոր մի մտեալ՝ ապրէր : Իսկ Մուշեղ զօրավարն Հայոց տէրն Մամիկոնէից հասեալ Ուռնայրի Հոնաց թագաւորին , և բնով Նիզակին ծեծէր զգլուխն նորա թուլագոյն , և ասէր . Ահա

ախոյեանս քո զոր յուզէիր . բայց դու գնա շնորհակալ լեր այժմ՝ զի այլ թագաւոր ես , և ես ոչ սպանից զթագաւոր զոք : Ես եմ Մուշեղ Մամիկոնեան զոր դուն ցանկայիր մենամարտիկ լինել : Զայս ասացեալ եթող զնա և ոչ էած առ Պապ , զի մի սպանցէ զնա : Եւ յետ յաղթութեանն և անհնարին և մեծ պատերազմին՝ դառնային զօրքն Հայոց և Հոռոմոց առ Պապ թագաւորն և առ եպիսկոպոսապետն ՚Ներսէս , բազում աւարաւ և խընդութեամբ :

Բայց յայնմ մեծի պատերազմին ոչ ոք անկանէր 'ի զօրացն Հայոց : Իսկ Մուշեղ Մամիկոնեան գործ մի զարմանալի պատմէր , թէ երբեւ սաստկացաւ մարտն 'ի մէջ երկոցունց՝ ընդ մեզ և ընդ թշնամիս մեր , եղեալ փոշին և շունչ նետիցն յօդս 'ի վերայ մեր , և 'ի ձայնից փողացն և 'ի նիզակացն և 'ի խաւարէն ոչ ոք ճանաչէր զիւր կողմն կամ զթշնամեացն . ապա երթայր սուրբ քահանայապետն առաջի մեր , և ձե-

ռամբ իւրով ցուցանէր զթշնամիս մեր . զոր ելանէաք ընդդէմ նոցա և յերկիր ընկենուաք . զնոյն տեսիլ և ամենայն զօրքն պատմէին . և անկանէին յոտս սրբոյն Ներսիսի և ասէին թէ Քո էր յաղթութիւնն ։ Եւ իջեալ 'ի լեռնէն տօն մեծ կատարէին զօրն զայն ։

Իսկ 'ի նմին ժամու մատուցեալ քսուք մարդիկ՝ ասեն ցթագաւորն Պապ , եթէ Մուշեղ զօրավարն զբռամբ էած զթագաւորն Աղւանից զՈւռնայր , և ձերբակալ արար և ոչ էած առ քեզ . և ոչ ինքն սպան . այլ եթող կենդանւոյն որպէս զկանոնայան Շապհոյ արքայի ։ Իբրեւ լուաւ թագաւորն Պապ՝ դարձոյց զերեսս իւր 'ի Մուշեղայ , և ընդ ակամբ հայելով զմահ խորհէր նմա ։ Ապա մատեալ Մուշեղ առաջի թագաւորին Պապայ ասէր ցնա . Ընդէր դարձուցեր զերեսս քո յինէն . միթէ վատութիւն ինչ արարի . ես զնմանիսն իմ սպանի՝ զորոց ոչ գիտեմ զթիւսն . իսկ նա թագաւոր էր թէպէտ և անօրէն

էր , զնա գեալ էր քեզ սպանանել , զի քո էր պատուակից . ես ոչ մխեցից զձեռն իմ 'ի նա , և մի այլ լիցի մխել զձեռն իմ յօծեալ որչափ և իցեմ կենդանի : Այլ առաջի քո կամ ես այսօր . եթէ հաճոյ թուի քեզ՝ սպան զիս , պատրաստ եմ 'ի մահ 'ի ձեռաց քոց : Եւ Պապ թագաւոր գիրկս արկանէր Մուշեղայ և համբուրէր զնա , և ասէր . Մահապարտք են արքն որ խօսին զՄուշեղայ չարութիւնս : Եւ պարգեւս բազումս շնորհէր նմա : Եւ ասէր Մուշեղ ցթագաւորն . Ես եդից զարիւն իմ յայսմ հետէ 'ի վերայ Հայոց . բայց դու ով թագաւոր աչօք քո տես և ականջօք քո լուր և մի յայլոց . և ընտրեա զլաւն 'ի վատթարէն , և զվաստակաւորն 'ի վատ արանցն . և մնասցէ յուղղութիւն երկիրս Հայոց : Եւ լուաւ զայս թագաւորն և հաճոյ թուեցաւ նմա բանքն :

Եւ գնացեալ անտի Մուշեղ զօրավարն Հայոց , և կայր ընդդէմ ամենայն պատերազմացն զօրօքն Հայոց : Իսկ մեծն Ներսէս շրջէր

ընդ ամենայն երկիրն Հայոց, և հաւաքէր զնիւթ վարդապետութեան իւրոյ: Ընդ նմա և աշակերտն իւր Մեսրովբ 129, որ անուանեցաւն Մաշդոց. ամենայն կրթութեամբ հոգեւոր իրաց զանձնն տուեալ. բազում և անհեշտական իրաց և անհանգիստ գիշերային, զհարկ քնոյ յոանաւոր տքնութեամբ 'ի թօթափել ական վճարէր, ոչ սակաւ ժամանակս այլ յոլովս:

ՃԲ. Բայց Թագաւորն Պապ զաղբագործէր, և յանդիմանէր զնա սուրբն Ներսէս, և նա ոչ լսէր նմա. և սուրբն Ներսէս դարձուցանէր զերեսս իւր 'ի նմանէ, և անիծանէր զնա որպէս զհայր նորա զԱրշակ: Եւ անդէն նեղէին զնա դեւքն. և երեւէին նմա իբրեւ զօձս մարմնաւոր տեսլեամբ: Եւ եկեալ առ Ներսէս անկանէր առաջի նորա, և հայցէր թողութիւն՝ զի մացէ առ նա: Եւ իբրեւ մտանէր մեծն Ներսէս առ նա, դիւրանայր նմա, և հանգչէր, և ոչ երեւէին նմա դեւքն, և հալածական լինէին 'ի

նմանէ : Եւ երբեւ ելանէր Ներսէս , ապա նեղէր Թագաւորին Պապ 'ի տապոյ ցանկութեանն . իսկ սուրբն Ներսէս յաղօթս կայր , և հալածէին 'ի նմանէ դեւքն . իսկ յետ մեկնելոյ սրբոյն , Թագաւորն 'ի նոյն չարիս անկանէր : Եւ ապա սուրբն Ներսէս արգելոյր զնա և ոչ տայր նմա յեկեղեցին մտանել : Եւ Թագաւորն խորհէր 'ի դիպող աւուր սպանանել զՆերսէս , բայց ոչ կարէր վասն երկեւղի նախարարացն և ժողովրդեանն՝ որ գային առ Ներսէս , և բժշկէին ախտաժէտք և աշակերտէին նմա , և ոչ մեկնէին 'ի նմանէ բազում ժողովուրդք : Եւ զնոր ցաւքն զոր առաքեաց Աստուած յանիրաւ քաղաքն Արշակաւան , զայն որ ժանգ անուանեն մինչեւ ցայսօր , զոր բժշկէր սուրբն Ներսէս ձեռօքն տեառնագրելով :

Յետ այսորիկ կոչէր Թագաւորն Պապ զմեծն Ներսէս 'ի ճաշ կեղծաւորութեամբ , զի դեղօք սպանցէ զնա , 'ի դաւառն Եկեղեաց , 'ի գեւղն որ կոչի Խախ . և առեր

ցնա նենգաւ, թէ կերիցես զճաշ ընդ իս, յորէս յայսմանէ գնացից ըստ կամաց քոց մինչեւ ցվախճան. և ոչինչ և հրամայեսցես ինձ՝ ապաշխարեցից 'ի քուրձ և 'ի մոխիր ըստ կամաց քոց: Իսկ սուրբն Ներսէս ոչ գիտելով զանձին իւրոյ վնաս, երթայր ընդ նմա 'ի ճաշ. և իբրեւ մտանէր 'ի խորանն, բանադատէր զնա Թագաւորն բազմել 'ի Թագաւորական գահոյսն. իսկ նա ոչ առնոյր յանձն. և բազում աղաչանօք բազմեալ 'ի Թագաւորական գահոյսն. և Թագաւորն Պապ յարուցեալ հոլանէր զինքն, և իջանէր 'ի գետինն, և մատռուակէր նմա. և 'ի բաժակն խառնէր չար դեղ, և մատուցանէր սրբոյն՝: Իբրեւ արբ զբաժակն, գոհացաւ և ասէ. Օրհնեալ է Աստուած, որ արժանի արար զիս ըմպել զբաժակ մարտիրոսական և հասանել մահուատեանն, որում ցանկայի 'ի մանկութենէ իմմէ. բայց զիս ոչ ընթացայ կամաւ, զի առանց ըմբռնելոյ կամաւ անկանելն անձնահաճու-

Թիւն է. և ոչ հաճի պսակադիրն ընդ անձնահաճն, զի երբեւ զՊետ-րոսն գրգռեսցի: Բայց դու ով Թագաւոր անխրատ, գեղովք և նեն-գութեամբ անհասանելոյն է հնար. իսկ ես համապազ ընդ քեզ էի. յայտնապէս սպանանել զիս՝ ով էր որ արգելոյր զձեռն քո յինէն: Եւ արդ տէր Թող սոցա զինչ գոր-ծեցին ընդ իս ՚ի սալապարտուց. և ընկալ զհոգի ծառայիս քո որ հանգուցանես զամենայն աշխա-տեալս. և յարուցեալ գնաց ՚ի վանս իւր:

Եւ զհետ գնացին նմա ամենայն իշխանքն, և զօրավարն Հայոց Մու-շեղ, և Մարդպետն՝ որ Թագաւո-րահայրն կոչիւր. և սեպուհք և կուսակալք և ռամիկք զկնի նորա ընթացին ոտով և տրտմութեամբ: Եւ երբեւ եմուտ սուրբն ՚ի վանս իւր, և վերացուցեալ զպարեգօտն յանձնէ իւրմէ, կայր կառուցեալ ՚ի վերայ ոտին կապուտակ բոլոր իբրեւ զնկանակ մի. և նախարարքն մատուցանէին նմա Թիւրակէս և

անդեղայս, զի թափեսցեն զդեղն և ապրեսցի: Իսկ նա ոչ առնոյր յանձն. զի մի մերժեսցի 'ի տէրունական խորհրդոյն և 'ի փրկական մարմնոյն տեառն. և ասէ, Թո՛ղ տուք ինձ զի վաղ հրաժարեցայց յանխրաւ աշխարհէս և յապերախտ մարդկանէ 130: Զի ահագին է անջատումն հոգւոյ 'ի մարմնոյ. և սոսկալի յետ յարութեանն ըմբռնումն 'ի տանջանսն. քանզի մին զմիաւորեալսն յօդս քակտէ. իսկ միւսն՝ զյանցումն հրապարակէ յայտնապէս. քանզի ոչ է թաքչել որ զանխրաւսն գործեաց, 'ի յանժուժկալ 'ի դատաստանին կշտամբեալ զմեղսն: Այլ որ ճշմարիտդ ես՝ զվշտակցութիւն քո ցոյց ինձ Աստուած և ողորմեա:

Յորժամ 131 հնչումն լինի փողոյն և բարբառք՝ երկնաւոր զօրացն լսին ձայնք, յայնժամ եղկելիքն տագնապաւ կորնչին և պահանջին 'ի գեհենն. և դասք արդարոցն միաւորեալ երգեն ընդ սերովբէսն, վասն որոյ քեզ գոչեմ խնայեա յիս տէր և ողորմեա:

Յորժամ իմանամ զահաւոր բարբառ փողոյն 'ի յաւուրն յետնումն, և յառենի նստելով քեզ տէր, 'ի ժողովել զբոլորեցն 'ի յանողորմ դատաստանն առաջի քո տէր, յայնժամ քակին ոսկերք իմ, խափանեալ միտք 'ի խորհրդոց, ինձէն զիս դատապարտեմ 'ի դատաստանաց իմոց, թէ իւ փրկեցայց, այլ 'ի զղջումն և յապաշխարութիւն փոխարկեալ գթա Աստուած և ողորմեա :

Իբրեւ լուէին զայս ամենայն ժողովուրդն՝ յարտասուս եղեալ լային դառնապէս : Եւ Մուշեղ Մամիկոնեան և Հայր մարդպետն, և Բակուր Վրաց իշխանն, և Բագրատ Բագրատունեաց իշխանն, և Հայկըն 132 Հայկազնի և Մեհրուժան Արծրունեաց իշխանն, և Համամ Մելետեննւոյ իշխանն, և այլ մեծամեծ իշխանք և նախարարք և տանուտէարք և գաւառապետք Հայոց աշխարհին, և եպիսկոպոսք բանադատէին զնա զի առցէ զգեղաթափն : Իսկ սուրբ քահանայա_

պետն 'ի բաց մղէր ասելով. Թէ Ես-
ես օգնականութեամբ Աստուծոյ
իմոյ կարող եմ հալածել զզաւս 'ի
մարմնոյ իմոյ . բայց Թողից զի մի խա-
փանումն լիցի յառաջարկութեան
Ճանապարհի իմոյ . զի կոչէ զիս Նա-
հատակացիրն զի առից զվարձս վաս-
տակոց իմոց : Բայց զի ազգդ Ար-
շակունեաց բազում լուսաւորս պա-
կասեցուցեալ յաշխարհիդ Հայոց
յազգէ իմմէ , չէջուցին զլոյսն յին-
քեանց , զի եղծանելով տէր կամի
եղծանել զնոսա որպէս զիսրայել:
Արդ զոր ընդ իս գործեցին՝ Թո-
ղեալ լիցի նոցա . զի ցանկութիւն
իմ լցեալ եղեւ : Բայց յետ ննջոյ
յիսուն ամաց՝ բարձցի քահանայու-
Թիւն 133 յազգէս մերմէ՝ որ է սրբոյ
նախնոյն իմոյ Գրիգորի , ընդ նմին
և Թագաւորութիւնդ յազգէդ Ար-
շակունեաց , մինչեւ 'ի մերձենալ
պղծոյն անապատի : Յետ այնորիկ
'ի լնուլ ամաց հարիւր և յիսնից 134
առցեն զսուրբ քաղաքն Երուսա-
ղէմ Պարսիկք , և նոյն ինքն զխաչն ,
և վարեսցեն 'ի գերութիւն . և իբ-

րեւ դարձցի 'ի Պարսկայ՝ այլ ոչ եւս դարձցի յԵրուսաղէմ. և Երուսաղէմ ոչ եւս կացցէ յիշխանութեան Յունաց. և հռոմայեցիք տիրեսցեն նմա, և արկցեն ընդ հարկիւ զՅոյնսն մինչեւ 'ի ժամանակս մերձենալոյ արիական ազգին. և ապա առցեն զԵրուսաղէմ ազգն Հոռովմայեցւոց՝ որ անուանին փռանգք, և բարձցեն ըզհարկատրութիւն Յունաց։

ԺԳ. Արդ սկիզբն աշխարհաց աւերածոյն Հայոց 'ի նենգութենէ եղիցի և յանհնազանդութենէ միմեանց. զի ոչ հնազանդին իշխանքն, այլ բարժանին յիւրաքանչիւր գաւառս, և ոչ հասցեն միմեանց 'ի Թիկունս, այլ 'ի Թշնամեացն կողմն եղիցին։ Յետ այնորիկ ելցեն յիւրաքանչիւր հայրենեաց և անկցին զիշխանութեամբն Յունաց 'ի սարկութիւն և 'ի ծառայութեան. և Թուլասցին 'ի հաւատոց. և այնպէս պակասեսցի իշխանութիւն նոցա։ Եւ Թագաւորքն Յունաց սակաւակեացք եղիցին և զպատերազմաց ոչ

հոգացեն, այլ զհարկաց միայն. և զփոխելոյ կարգաց և զքննութեան հաւատոց, զոր հիմնեցուցին առաքելաշխան ժողովքն երեք. և քակտեսցեն զբազումս 'ի հաւատոց քրիստոնէից. և այն լիցի ջան նոցա և վաստակ: Բարձցի զօրութիւն Յունաց արանց պատերազմողաց. զզուեսցի աշխարհ նոցա յազգէ աղեղնաւորաց և անկցին զհարկիւ նոցա. խոպանասցին գաւառք բազումք. տարակուսելով տարակուսեսցի երկիր. և եղիցին հրաձգութիւնք և ջրհեղեղք և շարժմունք. կործանեսցի տեղիս տեղիս. լինիցին նշանք և սքանչելիք յերկինս:

Լռեսցի և քահանայութիւնս Հայոց զամս բազումս. տապալեսցի 'ի հիմանէ Հայք. առցին և պարիսպք անմատոյցք 'ի նետողաց ազգաց. և կերիցեն ազգն այն զմարմինս բազկաց իւրեանց, այսինքն զազգայինս իւրեանց, ըստ կանխասացութեան Եսայեայ: Եւ այս բան 135 Յովհաննու, որ ասէ թէ նեռինք բազումք եկեալ են յաշ-

խարհս . և այն ամենայն սկիզբն է երկանց ։ Եւ սուրբ տեղիք աթոռոց հայրապետութեանն Հայոց՝ եղեցին բնակութիւն և օթեվան ազգացն հեթանոսաց . և դատարկացին ճանապարհք բազմագնացք առ 'ի չգոյէ մարդկան . և օգնութիւն և ոչ ուստեք ։ Ցայնմ ժամանակի ասասցեն լերանց թէ անկերուք 'ի վերայ մեր , և բլրոց՝ թէ ծածկեցէք զմեզ , ըստ գուշակմանն Երեմիայի ։ Ցամաքեսցի սէր բազմաց . արմատասցի անդթութիւն , և մարդիկ անժուժք եղիցին և ամենայն աշխարհ անհանգիստ ապականեսցի . և իմաստունք յարեւելս փախիցեն ։

Եւ յետ այսորիկ փրկութիւն ամենայն աշխարհաց քրիստոնէից յարիական զօրացն եղիցի 'ի հռովմայեցւոց . և ապա խաղաղեսցի երկիր 'ի բարի գնացս ժամանակս բազումս . որպէս զգրաստ ամենալից դարձցի ։ Եւ հերքեսցին անօրէնք , և անկցին ընդ լծով ծառայութեան հռովմայեցւոյն . և մարդիկ աւազեսցեն զանցեալսն և զոչ

հանդիպեալսն այնմ բարեաց ։ Յետ այնորիկ յայտնեսցի որդին կորըստեան նեռնն ։

Արդ մինչդեռ եմ 'ի մարմնի զեկուցանեմ ձեզ. որոյ գալուստն ազդեցութեամբ սատանայի է . և ոչ թագաւորէ նա Տաճկաց կամ Պարսկաց կամ այլազգեաց , այլ պաշտօնէից ամենայաղթ խաչին . զի ինքն որդին կորստեան կործանելոց է 'ի փառաց նորա . և լինիցի պիղծն այն 'ի յանդիմանութիւն Հրէիցն . զի և նոքա իսկ ակն ունին մոլորեցուցչին ։ Արդ դուք պատուէր տուք որդւոցն ձերոց , և որդիք նոցա որդւոց իւրեանց . և դրոշմեսցեն գրով և պահեսցեն մինչեւ 'ի մերձենալ պղծոյն . զի լինիցին որոգայթապատրաստք 136 , զի մի ընկղմեսցին յորոգայթ նորա ։

Արդ ես ծնայ զձեզ լուսաւոր աւազանաւն , և մինչեւ 'ի շունչս վերջին՝ բորբոքեալ եմ 'ի գութ ձեր . և վշտանամ թէ գուցէ արատ ինչ խառնիցի 'ի սնունդս ձեր՝ յետ ելանելոյ իմոյ յաշխարհէս ։ Զոր փո-

խանակ իմ Աստուած բանն Հօր հովուեսցէ զժողովուրդ իւր, զոր գնեաց արեամբն իւրով: Արդ նշան յայտնելոյ նեռինն այս է. յորժամ լցցի երկիր խռովութեամբ՝ յետ բարի ժամանակին և բարձցի իշխանութիւն Հռովմոց, որպէս ծանուցաւ Դանիելի վասն չորս գազանացն. մատակ առեւծն՝ որ է Մարաց թագաւորութիւնն, և արջն՝ որ է Բաբելացւոցն, և ինձն՝ որ է Պարսից, և չորրորդն որ ահեղ և զարմանալի ցուցաւն, որ ուտէրն և մանրէր զերկիր, որ է Հռովմոց թագաւորութիւնն. զի որպէս 'ի գալստեանն Քրիստոսի բարձաւ իշխանութիւնն Իսրայելի, նոյնպէս և յայտնել աղծոյն՝ բարձցի իշխանութիւնն Հռովմոց: Իսկ երեք թագաւորութիւնքն բարձան 'ի միջոյ. և չորրորդն եկաց հաստատուն, որ է Հռովմոց թագաւորութիւնն՝ որ բառնայ 'ի նեռնէն:

Յառաջագոյն ծաղկի անգթութիւն և ցամաքի սէր, և լինի սովք և սասանութիւնք և սրածութիւնք.

մատնեսցէ եղբայր զեղբայր 'ի մահ և հայր զորդի · այս 'ի տեառնէ ասացաւ , զոր գիտէք իսկ · և հովանայ 137 երկիր : Զի զոր սերմանեացեն՝ ոչ ժողովիցեն , և որ տնկիցենն՝ ոչ կերիցեն , և բազում գուշակմունք եղիցին յաղագս յայտնելոյ նեռինն : Արդ մի կարծիցէք թէ սատանայ է կամ դեւ 'ի զօրաց նորա · ոչ , այլ մարդ ապականեալ մտօք 'ի տոհմէն Դանայ , և ծնանի 'ի Քորազին գեղջէ 138 յազգէ Իսրայելի · և անուն հօր նորա Հռովմելայ , և մօրն նորա Ներղիմինէ 139 . և անուն նորա Հռասիմ · և ծնանի 'ի կուսանաց · և գայ 'ի Բիւզանդիոն · և մեծանայ անուամբ ըստ մեծութեանն Յունաց : Ապա բաժանի թագաւորութիւնն Յունաց ընդ տասն գաւառան · և մինն ինքն իցէ 'ի թագաւորացն և զերիս թագաւորսն սպանանիցէ , և զայլսն զձեռամբ ածիցէ , և ինքն տիրեսցէ ամենեցուն · Թագաւորեսցէ ժամանակս երեք և կէս ժամանակաց · և բարկութեամբ ապականէ զերկիր · և զամենայն ար-

բանսարկութիւն սատանայի յինքն կրէ, որոյ գալուստն իսկ ազդեցութեամբ սատանայի է. և արասցէ նշանս և արուեստս աւուրս 140 հազար և երկերիւր և վաթսուն։ Բայց երանի որ համբերիցէ և հասանիցէ յաւուրսն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի և փրկչի։ Յայնժամ ելթէ աղաւացեն երկուս 'ի մի երկանսն, մին առնուցու և միւսն թողուցու. և ցցուեսցի տերեւ թզենւոյն՝ որ է նեանն. ցցուել տատոյ՝ պաշտօնեայք նորա. երկանն՝ կենցաղս է. և առնուլն ընտրութիւն բարւոյն 'ի չարէն։

Արդ նստցի որդին կորստեան յեկեղեցւոջ Աստուծոյ և սկսանիցի հայհոյել զԱստուած. և իւր պահանջէ զերկրպագութիւնն մատուցանել իբրեւ Աստուծոյ. և ցուցանէ զանձն իւր Աստուած, և հպարտանայ 'ի վերայ ամենայն անուանեալ աստուծոյ. և միայն զինքն տացէ պաշտել փոխանակ Աստուծոյ. և լնու չարեօք և պղծութեամբ զերկիր։ Յայնժամ առաքէ Աս-

տրուած զերկուս մարգարէսն զԵ-
նովք և զԵղիաս 'ի փրկութիւն մարդ-
կան, որ զգուշացուցանեն զհաւա-
տացեալս, և դարձուցանեն զսիրտս
հարց առ որդիս իւրեանց. որպէս
և տէրն իսկ պատմեաց՝ թէ Եղիա
գայ և յարդարեսցէ զճանապարհս
իմ: Արդ որպէս յառաջին գալըս-
տեանն Յովհաննէս եղեւ կարա-
պետ Քրիստոսի, նոյնպէս և յեր-
կրորդ գալստեանն Եղիա պահի կա-
րապետ Ենովքիւ հանդերձ: Արդ
նոքա երկոքեանն գայցեն և ասաս-
ցեն. Մի հաւատայք պղծոյն որ կայ
'ի սուրբ տեղւոջն. զի նա է վիշապն
մեծ և օձն կամակոր. պատրանօք
խաբէ զձեզ և արուեստիւք ստոք.
մի մերձենայք 'ի նա, այլ փախե-
րուք 'ի լերինս. և համբերեցէք սա-
կաւ մի ժամանակս. սուտ Քրիստոս
է դա, և մարգարէիւք ստոք խոլա-
մանկել կամի զպաշտօնեայս խա-
չին. ազդեցութիւն է դա բազում
մոլորութեանց. այլ աղօթեցէք
զտիւ և զգիշեր. զի սակաւ է նեղու-
թիւնդ և անսպառ բարիքն:

Իսկ Քրիստոս ոչ գայ յերկրէ, այլ յերկնից անճառ փառօք. և մատնէ զդա 'ի խաւարն արտաքին և յանողորմ տանջանսն. և ոչ կայ Քրիստոս առաջի Պիղատոսի 'ի դատաստան, այլ ինքն դատի զերկիր. զայս և որ սոցին նման քարոզեն մարդկան Ենովք և Եղիա: Յայնժամ նեխի և դարշի երկիր 'ի հոտոյ մեռելոցն, և ապականի յամենայն կողմանց, զազրանայ ամենայն դէմք մարդկան 'ի նեղութենէ սովոյն և 'ի ծարաւոյ ջրոյն. անկեալ գնի ոսկի և ականք պատուականք և գունակ գունակ պատմուճանք, և ոչ ոք ցանկայ 'ի վտանգին որ լինելոցն է 'ի չարութեան ժամանակին: Յայնժամ յիշեն մարդիկ զգործս իւրեանց ազտեղիս, որք տարին 'ի ճակատ զմոլորութեան նշանն պիղծ ժողովուրդն, և ասեն ցնեռնն. Տուր մեզ օգնութիւն 'ի նեղութեանս, զի սպառիմք առ հասարակ: Եւ նա ոչ օգնեսցէ նոցա, այլ սնոտի յուսով խաբէ զնոսա: Յայնժամ ըմբռնին 'ի ձեռն նորա Ենովք և Եղիա, և

պիղծն այն չարչարէ զնոսա անհնարին հարուածովք և հայհոյէ զԱստուած բանիւք բազմօք։ Իսկ յորժամ ոչ հնազանդին սուրբ մարգարէքն պատրանաց նորա և սուտ նշանացն, սպանցէ զԵնովք և զԵղիա առաջի բազմաց. և խնդութիւն լինի սուտ մարգարէիցն 'ի սպանանել զմա՛հ ճշմարիտ մարգարէիցն։

Յայնժամ և ինքն մեծ վիշապն որդին կորստեան գոչմամբ մեծաւ հնչէ 'ի լսելիս ամենեցուն և ասէ. Տեսէք զզօրութիւն իմ մեծ. զի 'ի բազում ամաց անմահ լեալ էին դոքա, և այլ ոչ կարացին ապրել 'ի ձեռաց իմոց. և ոչ ոք կարող յաղթել զօրութեանս իմոյ։ Եւ առաւել բորբոքէ չարութիւն ընդ աշխարհս. որ ասէր Յիսուս սատակեսցէ զնա հոգւով բերանոյ իւրոյ։ Եւ յորդորէ զհայհոյութիւն առ բարձրեալն 'ի լսելիս բազմաց։ Եւ մինչդեռ զայն յաւելուցու խօսել, յանկարծակի յական թօթափել լինի շարժումն ահեղ որոտմամբ. և 'ի նմին ժամու հալեալ մաշին պաշտօնեայք

պղծոյ նեռին ։ Յայնժամ լուսա-
փայլ երևի նշանն արքունական 'ի
զօրացուցանել զապաւինեալսն 'ի
նա 'ի պարծանս արդարոց. զի կա-
պեցին զանձինս իւրեանց 'ի սէր նո-
րա ։ Ցոլանան մասունք ամենայաղթ
նշանին և զօրութիւնք սրբոյ եկե-
ղեցւոյ , և առնուն հաստատ ընդ
տէրունական խաչին. և լուսաւորք
նուաղին 'ի լուսոյ նորին ։ Կործա-
ցին ազգք. զի գայ 'ի դատել զոչ
դրոշմեալսն նովաւ , որ ոչ ծանեան
զնա տէրունեան նշան ։

Յայնժամ գայ յերկնից անճառ-
փառօք Թագաւորն փառաց. գալա-
րին երկինք և հալին իբրև զմոմ
առաջի հրոյ. գետք հրեղէն և մթա-
գոյն հոսին վերուստ 'ի վայր՝ մաք-
րելով զերկիր յանօրէնութեանց և
'ի պիղծ գործոց ։ Լսին ձայնք լուսե-
ղէն զօրացն. շարժին զօրութիւնք
երկնից. և փող սաստիկ հնչէ 'ի գե-
րեզմանս , Արիք մեռեալք ընդ ա-
ռաջ փեսային. քանզի եկն եհաս
հայրենի փառօքն. արիք արդարք և
մեղաւորք ընկալարուք զհատու-

ցուցին : Յայնժամ կոծեցին ան-
մխիթար սգով արտասուօք անպատա-
րաստք . և զգենուն փութապէս
զանանցական մարմինս . ապա մեղա-
ւորքն երևուին ստուերագոյն մար-
մնով , քանզի ներկեալք լինին գոր-
ծովք չարեաց իւրեանց . յաւելա-
գոյն ևս գան անձամբ ընտրեալքն
պայծառանման մարմնով . բարձրա-
նան յերկրէ լուսեղէն ամպովք 'ի
հանդիպումն Քրիստոսի . և հիանան
վերինքն ընդ նոսա և ասեն . Զի՞նչ
է գործեալ սոցա յերկրի , զի երա-
մովքն գան առ տէր զուարթա-
ցեալք : Պատասխանի տացէ նոցա
տէր թէ սոքա են բարեկիր զինուորք
իմ , որ ուրացան զանձինս իւրեանց .
և մերկնեցան յերկրէ , և 'ի խաչ հա-
նին զանձինս իւրեանց կարեօք և
ցանկութեամբք հանդերձ վասն սի-
րոյ իմոյ . և արդ ես տաց սոցա
զուրախութիւն իմ զանսպառ : Եւ
մինչ լսիցեն զայս հրեշտակք ասի-
ցեն . Դուք էք օրհնեալք 'ի տեառ-
նէ , արդ ուրախ լերուք յուրախու-
թեան ձերում :

Յայնժամ նստցի Թագաւորն փա-
ռաց յաթոռ իւր. և հրեշտակք
ահեղ սպասաւորեն նմա. և յառա-
ջագոյն կապի սատանայ առանց
հարցափորձելոյ, և առաքի 'ի վիհն
տարտարոսի. և չարալլուկ կապին
զօրք նորա ձախակողմանք. որ ու-
սուցին մարդկան զգործս չարիս. ոչ
են նոքա արժանի 'ի դատաստան
մտանել, զի չեք պատասխանի առա-
ջի բեմի նորա: Եւ անդէն մեկնին
յերեսաց նորա, և կացցէն յաջմէ
նորա բարեացն յուսով արդարքն.
կան և մեղաւորքն ամօթով մեծաւ
'ի պահանջումն իւրաքանչիւր գոր-
ծոց. ատեան դնի և դպրութիւնք
բանին, խրձունք կապին որպէս ո-
րոմն և ձգին 'ի հուրն անշէջ: Իսկ
ոմանց և դրունքն փակին ուրախա-
լից հարսանեացն. զի մի հնար լիցի
զփեսայն երկնաւոր հայել տեսա-
նել. զի ոչ վառեցին զողորմութ̃ե
զլապտերս, առելով ընդ նոսա, Ոչ
գիտեմ զձեզ, 'ի բաց կացէք յերե-
սաց իմոց: Եւ յառաջ քան զայսո-
սիկ ընծայէ Թագաւորն զերկնայինն

պսակն արժանաւորացն, ասելով ցնոսա. Եկայք օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք զպատրաստեալ ձեզ զարքայութիւնն 'ի սկզբանէ աշխարհի:

Նորանան երկինք, նորոգի երկիր, կանաչացեալ սաղարթանայ վայելչութեամբ, և լինի արքայութիւնն երեւանաւոր, որպէս և դրախտն վաւթմնաւոր, և երկինք հարիւրաւոր. և ոչ լինիցի յերկրի աշխատութիւնք և քրտունք. ոչ օձ խաբող և ոչ կին պատրող. այլ լինիցին ծառք անթառամելիք պտղովք. և մեկնեալ ցաւք և տրտմութիւնք. այլ լինի միայն ուրախութիւն և փափկութիւն: Եւ ոմանց յերկրի տացէ զարքայութիւն: Իսկ մարտիրոսացն կարմրագոյն փայլեն պսակքն և պատմուճանք և փառքն. ընդ նոսին և կուսանացն՝ որք ոչ շաղախեցին զանձինս իւրեանց ընդ աշխարհիս այսորիկ, ընդ կուսին Մարիամու ընդունելոց են զպայծառութիւն փառաց պսակին, այլակերպեալ որպէս զարեգակն 'ի մէջ աստեղաց.

նոյնպէս առաւելուցու փառք կու-սանացն 'ի մէջ ամուսնացելոցն :

Եւ դուք որդեակք իմ զայս ա-մենայն 'ի միտ առէք, զի ապրես-ջիք յորոգայթից ուսողին, և զերծ-ջիք որպէս զայծեամն 'ի գործեաց, և պարծանք իմ լինիջիք յաւուրն Քրիստոսի ընդ աջմէ նորին. որպէս եցոյց ինձ տէր :

ԺԴ. Զայս ամենայն ասացեալ սրբոյն Ներսիսի մարգարէական ա-կամբ. և ունկն դնէին նմա ամենայն ժողովուրդն և մեծամեծ նախա-րարքն Հայոց. և ցաւն սախպէր նե-ղէր զնա : Եւ Մուշեղ Մամիկո-նեան և այլ իշխանքն անկանէին առաջի ոտից սրբոյն, և հայցէին 'ի նմանէ թողութիւն և օրհնութիւն : Եւ նա թողութիւն շնորհէր նոցա. և յանձն արարեալ զնոսա Աստու-ծոյ և բանի շնորհաց նորա : Եւ զՄուշեղ սպարապետ և զայլ իշ-խանսն՝ որ անդ հանդիպեցան յայ-նըմ աւուր 'ի տոհմէն Մամիկո-նեան, կոչեցեալ առ ինքն՝ եդ ըզ-ձեռն իւր 'ի վերայ, օրհնեաց զնո-

սա և ասէ. Տէր Աստուած ինքնին եղիցի առաջնորդ Մամիկոնէից, որպէս Թագաւորին Դաւթայ և զօրավարին Յեսուայ. և հաստատեսցէ զոտս ձեր անսասանելի, և զձեռս ձեր զօրացուսցէ 'ի վերայ Թշնամեաց ձերոց. և հաստատեսցի օրհնութիւնքն առաջինք յազգ Մամիկոնէից, Թէ Մինն զհազարսն հալածեսցէ և երկուքն զբեւրսն շարժեսցեն. և օրհնեալ լիցին յամենայն ազգս որ 'ի վերայ երկրի. և գնասջիք անուանիք և պնդակազմ 'ի հաւատս ուղղափառս, և նախանձախնդիր հաւատոց քրիստոնէութեան. մի մոռջիք ընդ լծով ծառայութեան այլազգեաց. և ձեզ եղիցի փրկութիւն ազգաց. և ընտրեսցին մարգարիտք պատուականք յազգէդ Մամիկոնէից, որ կարգեսցին մարտիրոսութեամբ 'ի Թագաւորքային Քրիստոսի: Եւ այլ եւս բազում բանիւք օրհնեաց զնոսա:

Եւ յետ այսորիկ համբարձեալ զհանապազատարած զձեռս իւր հարուստ ժամ մի վասն Հայոց աշ-

խարհիս, հայցեր և ասեր. Տէր Աստուած բազմագութ և ողորմած, պահեա անարատ զհաւատս Հայոց աշխարհիս, բարեխօսութեամբ սուրբ առաքելոյն Թադէոսի վիճակողի սորա, և նախնոյն իմոյ Գրիգորի հետևողի նորա. զի թէպէտ և լինի անօրէնութիւն յազգս Հայոց ըստ օրինակի նախնեաց սոցա, սակայն դու ողորմութեամբ քո խրատեա զսոսա. և հերձուածող ապականիչ սուրբ հաւատոյ մի մտցէ յաշխարհս Հայոց, մի գաղձն ժխտակար զզուեսցէ զանապականն բաժակ սեղանոյ քո, և զսուրբ հաց փրկութեան խորհրդոյ քո: Աղաչեմ զքեզ տէր, պահեա զսոսա ամփոփս 'ի հաւատս ուղիղս, և մի կոխեսցեն գայլք ժխտակարք զգաւիթ սուրբ հօտի քո: Ի հաւատս առաքելականս պահեսցես զվիճակս մեր. զի աշակերտք մոլորութեանցն պարք հերձուածողացն՝ շրջեսցին ընդ լեռնացեալ միտս աշակերտեալց իւրեանց, որ ոչ դաշտացոյց լուսաւորութիւն

աւետարանին քո զբարձրացեալ միտս նոցա ։ Այլ Թէպէտ և յաղթմանէ չարին մատնիցէ 'ի վիճակս յայս հերձուածող, դու տէր աղաչեմ զքեզ՝ արմատաքի խլեա զնոսա յաշխարհէս յայսմանէ ․ և մի՛ պղտորեսցէ պղտորուածն զանապական աղբեւր ջրոյ բղխեալ յաստուածութեան հոսմանցդ աշխարհիս Հայոց ․ և զվիճակս զայս պահեա անարատ մինչեւ 'ի միւսանգամ գալուստ քո ։

'Եւ զայս աղօթս արարեալ և յետ այսորիկ մատնէր սուրբ քահանայապետն յեկեղեցին և ողջոյն տուեալ սեղանոյն սրբութեան, և ոյլ եւս եղբարցն 142 ամենեցուն, որոց անդն էին ․ և ասէ ․ Ողջոյն քեզ սուրբ եկեղեցի, ողջոյն քեզ սեղան սրբութեան, ողջոյն ձեզ դասք քահանայութեան ․ ողջոյն ձեզ հաւատացեալ եղբարք իմ 'ի տէր ․ ողջոյն ձեզ դունդք զինուորութեանց ․ ողջոյն ձեզ պաշտօնեայք և դպիրք սուրբ եկեղեցւոյ ․ ողջոյն ձեզ համօրէն ազինք ։ Եւ

Ճանապարհորդեցի առ արարիչն իմ. Թողի զամենայն զկեանս իմ, Թողի զժառանգութիւն իմ, և ըստ հրամանի քում մերձեցայ 'ի հող յորմէ առեղծայ: Ահա հրաժարիմ 'ի քէն սուրբ եկեղեցի. ահա հրաժարիմ 'ի ձէնջ սիրելի եղբարք 'ի կոչումն վերանորոգողին Քրիստոսի Աստուծոյ իմոյ: Աղօթս արարէք վասն իմ հայրք իմ եղբարք և որդիք, և օրհնեսցէ զձեզ Քրիստոս փրկիչն մեր. պահեսցէ հաստատուն 'ի հաւատս իւր, մինչեւ 'ի սահմանեալ կէտ կոչմանս այսորիկ. և խաղաղութիւն տեառն եղիցի ընդ ձեզ յաւիտենից յաւիտեանս. ամէն:

Յետ այսորիկ բազմէր 'ի քահանայապետական աթոռ իւր. և սկսաւ ասել. Օծեր իւղով զգլուխ իմ. բաժակ քո որպէս զանապակ արբեցոյց զիս:

Հրաժարելով 143 յաշխարհէս մարմնով, յետ մահու խափանին ամենայն խորհուրդք և առժամայն լուծանի ամենայն մարմնական պա-

տերազմ, 'ի հանդէս այնուհետեւ հանդերձելոցն ժամանեալ: Յայնժամ զարհուրեալ դողան առաջի բեմին, զնախագործան հրապարակեն. քանզի ամենեքեան ըստ իւրաքանչիւրոցն արժանաւորին հատուցման մեր: Որ հանապազ հզօրդ ես և յետ մահու ունիս իշխանութիւն, մարդասիրեա յիս յահագին դատաստանին և ողորմեա: Յորժամ հանդիպումն լինի աղջի մարդկան առաջի քո բեմիդ, սարսափին ոսկերք իմ դողալով և զարհուրիմ 'ի սպառնալեաց քոց Թագաւոր երկնաւոր, քանզի բաղձում ունիմ զանօրէնութիւն և զմեղս անձին իմոյ. այլ զքեզ կոչեմ յօգնականութիւն, որ կարողդ ես յամենայնի և բժիշկ հոգւոց, տէր ողորմեա:

Եւ քիրտն ոռոգանէր զանձամբն, և ցաւն ստիպէր զնա ուժգին. և նա ձեպէր 'ի հանդիստն: Եւ յարուցեալ յաթոռոյն ել 'ի գաւիթս եկեղեցւոյն, և տարածեալ զձեռս իւր, հայեցաւ յերկինս զուարթ սրտիւ. և յիշէր յաղթս

իւր զամենայն աշխարհ զհետևաւորս
և զմերձաւորս ։ Եւ ունկն դներ նմա
Մեսրովբ աշակերտն իւր, որ ա-
նուանեցաւն Մաշթոց․ և կացեալ
յաղօթս այսպէս ասելով․

․ Մերձեցաւ անձն իմ 'ի հող յոր-
մէ ստեղծայ․ քանզի պատուիրա-
նաւն յանցեայ, մեղայ նմա և ծա-
ռակեցի զդառնութիւն մահու,
տէր յոյս իմ օգնեա ինձ ։ Խընդ-
րեմք 'ի քէն թագաւոր թագաւո-
րաց և տէր տերանց, յորժամ գաս
դու և երևեալս մեծութեամբ քո,
գունդք հրեշտակաց և զօրութիւնք
առաջի քո ընթանան 144 ․ գաս
հիացմամբ մեծաւ և ձայնիւ փողով
զարթուցանես զննջեցեալսն, բժըշ-
կես զվիրաւորեալսն․ դաս բոցով և
դատիս անշէջ հրով, ծագիս 'ի վե-
րուստ յարևելից կողմանէ․ և
սուրբ խաչն ճառագայթիւք երևի
առաջի քո․ և յայտնեալ երևիս
աշխարհի, և հատուցանես իւրա-
քանչիւր ըստ գործս իւր․ բանին դըրա-
րութիւնք, կարգին աթոռք, և լը-
նի անկաշառ դատաստան․ գնին

կշիռք արդարոց և մեղաւորաց. ընդ նի ձայն մեծի փողոյ. ընԹանան զօրուԹիւնք, սարսափեն հրեշտակք, փայլատակի հուր, խաւարի արեգակն և լուսին, Թօթափին աստեղք, խառնակին ամպք, ցամաքի ծով, հիանան արարածք ամենայն. ուրախանան բարիքն և ողբան չարիքն, վկայքն պսակին ըստ ճգնուԹեանն, և դատաղքն ըստ տանջանացն, պապակին ուրացողքն, դատին խաչեցողքն, բերկրին երկրպագուքն խաչին, և հառաչեն ուրացողքն. պսակքն յայտնին և կուսանքն խնդան. առագաստն զարդարի, և իմաստուն կուսանքն պատրաստեալ մտանեն. ճրագունք վառեալք, իսկ յիմար կուսանքն դատարկացեալք, ճրագք անցեալք, գլուխ խոնարհեալք, սիրտք տրտմեալք. հալածին 'ի ձայնէ Թագաւորին որ ասէ, Ոչ գիտեմ զձեզ: Խնդան աջակողմանքն և լան ձախակողմանքն. խայտան օգիքն և մերժին այծիքն յերեսաց տեառն: Լոյսն պայծառանայ և խաւարն

նուաղք · դժոխքն աղաղակեն , և տատանեալ յամօթ լինի · ցանկութիւնն անցանէ և որդն ոչ մեռանի ։

Արդ յորժամ այս ամենայն կարգի 'ի քումմէ մեծութենէդ և 'ի զօրութենէդ , յայնժամ զասաւորեա և պայծառացո զհոգի ծառայի քո 'ի խորանսդ լուսոյ ընդ նահատակս քո և ընդ կամարարսդ , ընդ նմին և զամենայն հաւատացելոց բանիւ քո 'ի քեզ ։ Եւ նուաստս որ կալեալ զաթոռ առաքելոյն Թադէոսի և սրբոյն իմոյ 145 Գրիգորի · և զաւուրս ուրախութեամբ առանց աշխատանաց որպէս զու խնկ հաճեցար՝ քաղաքավարեցայ ընդ կամաց քոց · և այժմ տէր Յիսուս Քրիստոս ընկալ զոգի իմ խաղաղութեամբ 146 ։

Եւ զայս առաջեալ հրամայեաց ժողովրդեանն 'ի բաց երթալ յիւքենէ ։ Եւ յաղօթելն աւանդեաց զհոգին սուրբ եպիսկոպոսապետն Ներսէս , բարի խոստովանութեամբ 'ի Հայր և յՈրդի և 'ի Հոգին սուրբ , յամենեանն հրոտից , յաւուր հինգ-

շարաթու ։ Եւ ժողովրդեանն ոչ խնայեցեալ զվախճան առնն Աստուածոյ · զի ձեռք նորա կանգուն կային ընդ երկինս, և պատարանոցն անխոնարհելի · և ժողովուրդն մերձենային ՚ի նա՝ զի նստուսցեն զնա, զի էր աշխատեալ և վաստակեալ ՚ի ցաւոց դեղոյն ։ Եւ իբրեւ տեսին զնա զի վախճանեալ էր, հիացումն լինէր ժողովրդեանն, և անկեալ զպատարանոցաւ նորա, կոծ մեծ առնէին · Ճիչք և լալումն լինէր Հայոց աշխարհին, զի հեղաւ արիւն արդար ՚ի տարապարտուց · և ողբալով մեծաւ տարեալ կողմնեցուցին ՚ի քահանայապետական դահոյսն · և երեւէր տեսողացն իբրեւ կենդանի ։

Իսկ երկու անապատաւորք, անուն միումն Եպիփան և միումն Շաղիտայ, որք էին բնակեալ մին յԱւեւծ լերինն և մին ՚ի Նպատակ, և այլ բազումք հարք որք էին յայրսն և ՚ի քարանձաւսն, իբրեւ փոխեցաւ սուրբն Ներսէս՝ տեսանէին յիւրաքանչիւր տեղւոջէ ՚ի

տունջեան ժամու զմեծն Ներսէս իբրեւ մարմնով յափշտակեալ ընդ ամպս երկնից. և զի հրեշտակք տանէին զնա 'ի վեր, և գունդք գունդք գային ընդ առաջ նորա, բերելով նմա պսակս պայծառս և բազմապատիկս քան զարեգակն: Զոր տեսեալ սուրբ հայրքն մեծ զարմանամամբ և ահիւ՝ գային 'ի գաւառն Եկեղեաց 'ի գեօղն Խախ, և տեսանէին զվախճան առնն Աստուծոյ մեծին Ներսիսի, և յոյժ սգային զնա և ասէին. Ո՜վ լուսաւորիչդ աշխարհի, որ զանձին մեզ ոչ գիտելով՝ այլ քոյին անմեղութեամբդ և ջերմեռանդն աղօթիւքդ՝ զայլ մեղապարտաց զսատանայարոյց մեզ հալէիր, յիշեա զմեզ առաջի Աստուծոյ: Եւ պատմէին զանօրէնն ժողովրդեանն սուրբ հայրքն, և լինէր մեծ հիացումն:

Յետ այսորիկ կազմէին տապան Թագաւորն և այլ մեծ նախարարքն. և եդեալ զսուրբն 'ի տապանի՝ Թաղեցին զնա 'ի գեւղն՝ որ անուանի Թիլն աւան: Եւ կացեալ սիւն լու-

սոյ 'ի վերայ գերեզմանին զաւուրս քառասուն. և բազում բժշկութիւնք կատարէին 'ի գերեզմանէն, և մինչեւ ցայսօր. զի առնլով հող 'ի գերեզմանէ նորա՝ բուժէին 'ի ցաւոցն որ ժանտ անուանեն. զոր և ինքն խնդրեաց յԱստուծոյ զնոր և զանհնարին ցաւ վիրացն՝ վասն անիրաւ և չար քաղաքին Արշակաւանին ։

Արդ այսպէս քաղաքավարեաց զկեանս իւր մեծն Ներսէս, և այսպէս փոխեցաւ. կացեալ 'ի հայրապետութեանն Հայոց մեծաց ուղղափառ հաւատով, ամս երեսուն և չորս 147 ։

ԺԵ. Արդ յետ այսորիկ 'ի մի վայր ժողովեալ նախարարքն, իշխանքն և սեպուհք և սատրապք 148 Հայոց աշխարհին, մխիթարէին զմիմեանս վասն փոխման սրբոյն ։ Եւ կարգէին և տային զօրս 'ի ձեռս քաջին Մուշեղայ Մամիկոնենւոյ, զի ընդդէմ կացցէ պատերազմաց ։ Եւ ասէ Մուշեղ. Ոչ կարեմ, զի չիք մեր յաղթութիւն. զի յաղ-

թութեան մեր 'ի սրբոյն աղօթիցն լինէր . և այսպէս երեւի խորհրդոց իմոց՝ թէ թողեալ եղեւ Հայք 'ի ձեռանէ Աստուծոյ . զի բարձաւ արդարն 'ի միջոյ . և արդ վասն մեր ծով ուք աղօթեացէ ։ Եւ արդարացուցանէին զբանսն ամենեքեան ։

Եւ արդ թէպէտ և սպան Պապ զՆերսէս , այլ ոչ յաղթեցաւ չարեօք , այլ հրամայեաց զվանորեայսն քակել և զաղքատանոցսն , և զոր շինեալ էր երանելւոյն Ներսիսի ։ Իբրեւ տեսին նախարարքն Հայոց՝ խորհեցան սպանանել զՊապ , և թագաւորեցուցանել զքաջն Մուշեղ ։ Իսկ Մուշեղ արգելոյր զնոսա 'ի խորհրդոցն , և ասէր . Ո՞չ լուայք 'ի սրբոյն Ներսիսէ , զի պատուիրեաց մեզ և ասաց , թէ մի՛ վրէժխնդիր լինիք մահուան իմոյ , զի տեառն է վրէժխնդրութիւն ։

Յետ այսորիկ իբրեւ լուաւ թագաւորն Թէոդոս , թէ սպան Պապ արքայն Հայոց զսուրբն Ներսէս , արձակեաց գաղտնի թուղթ առ զօրավարն Հոռոմոց , որ եկեալ էին

'ի Թիկունս Հայոց, զի հնարեսցեն սպանանել զՊապ. և զօրավարն կոչեալ 'ի Ճաշ զՊապ Թագաւորն Հայոց, և թաքուցեալ 'ի տանն լեգէոնք սուսերամերկք. իբրև շատացան գինովն՝ պատեցին զօրականքն զՊապ, և սպանին 'ի սեղանի անդ, որ Թագաւորեաց Հայոց ամաց ամս եւթն ։ Այս վրէժխնդրութիւն յԱստուծոյ վասն տանն Աստուծոյ մեծին Ներսիսի լինէր ։

Ի ժամանակէն յայնմանէ յորմէ փոխեցաւ սուրբն Ներսէս, ոչ դադարեաց պատերազմ և խռովութիւն յաշխարհէս Հայոց ։ Եւ յետ մահուան Թագաւորին Պապայ՝ դումարեաց սպարապետն Մուշեղ զզօրսն Հայոց, և 'ի տագնապի նեղէր զաշխարհն Պարսից. և զձերբակալսն մորթէր և լնոյր խոտով, և տանէր. Զոհ լինէր Արշակայ և Վասակայ հօր իւրոյ ։ Եւ շինէր քանդէր զատրուշանսն որ յաշխարհին Հայոց, զոր գտանէր անդ և 'ի Վրաց, և նորոգէր զեկեղեցիս ։

Յետ այսորիկ Թագաւորեցոյց

մեծն Թէոդոս զՎարազդատ աշխարհին Հայոց 'ի տեղի Պապայ հօրեղբօր իւրոյ։ Եւ մատուցանէին քսութիւն զՄուշեղայ առ թագաւորն թէ նա եղեւ պատճառ սպանմանն Պապայ։ Եւ թագաւորն Վարազդատ խորհէր սպանանել զՄուշեղ. և ոչ կարէր վասն կորովութեան առնն և երկեւղի իշխանացն Հայոց։ Այլ կոչէր 'ի ճաշ զՄուշեղ. և իբրեւ բազմեաց և յաճախեցին գինւով, թաքուցեալ արս քսան, մատուցեալ յանկարծակի կալան զերկու ձեռացն Մուշեղայ. և թագաւորն Վարազդատ փութացեալ հար նիզակաւ 'ի սիրտ նորա. և ասէ Մուշեղ. Այս յո՞ր երախտեաց վերայ։ Եւ Վարազդատ ասէ. Գնա դու հարց ցՊապ, թէ զնա վասն է՞ր եդուր 'ի ձեռս սպանողացն։ Եւ ասէ Մուշեղ. Ի վերայ իմոյ վաստակոցն, արեան և քրտանցն, որ փոխանակ դաստառակի ոլաքաւ նետի որբէի զքիրտն իմ, արդ ա՞յս եղեւ հատուցումն ինձ. օրհնեալ է Աստուած. բայց ընդէ՞ր

ոչ դիպեցաւ մահ իմ ՚ի պատե_ րազմի և ՚ի վերայ երիվարի վասն քրիստոնէից ։ Եւ Սմբատ 149 Սահ_ ռունեաց իշխանն՝ հանեալ զսու_ սերն իւր՝ անցոյց ընդ փողսն Մու_ շեղայ 150 ։ Զոր առեալ զմարմին նորա տարեալ ՚ի Տարօն գաւառ՝ թաղեցին ՚ի վանսն Գլակայ 151 ։ Եւ թագաւորն Վարազդատ զՍմբատ Սահառունի զօրավար կարգէր փո_ խանակ Մուշեղայ ։

Եւ ՚ի տեսչութենէն Աստուծոյ թագաւորն Պարսից արձակէ զՄա_ նուէլ և զԿոն յաշխարհ իւրեանց կնաւ և որդւովք, որ էին որդիք Վասակայ Մամիկոնենւոյ և եղ_ բարք Մուշեղայ ասպարապետին զոր սպանին. զոր տարեալ էին ՚ի գերութիւն ընդ Արշակայ և ընդ Վասակայ Մամիկոնենւոյ հօր իւ_ րեանց ։ Եւ եկեալ Մանուէլ մեծա_ հասակ և եղբայրն իւր Կոնն որդիք Վասակայ յաշխարհն իւրեանց Տա_ րօն, և բնակէին անդ ։ Եւ կատա_ րէր օրհնութիւն սրբոյն Ներսիսի ՚ի վերայ ազգին Մամիկոնենից ։ Եւ

բանանայքն 'ի վերայ գաւառացն Մանուէլն և Կոնն. և յափշտակէր Մանուէլն զզօրավարութիւնն 'ի Սմբատայ Սահառունւոյ, և եկաց 'ի տեղի եղբօր իւրոյ Մուշեղայ և հօր իւրոյ Վասակայ:

Եւ յղէր Մանուէլ պատգամս առ Վարազդատ այսպէս, թէ Նզգն իմ զարիւն իւրեանց մաշեալ են 'ի վերայ թագաւորութեանն Արշակունեաց, յաղագս որոց ե֊կեղեցեաց և ուղղափառ հաւատոյ. որպէս պապն իմ Վաչէ 'ի վերայ Խոսրովայ, և հայրն իմ Վասակ 'ի վերայ Արշակայ, և եղբայրն իմ Մուշեղ 'ի վերայ Պապայ: Իսկ դու փոխանակ բարի առնելոյ տիրասէր ազգին Մամիկոնենից՝ չար հատու֊ցեր. զի զՄուշեղ զեղբայրն իմ զայր աստուածազօր և քաջ, զոր ոչ կարացին Թշնամիք յաղթել նմա, կալար զնա, և իբրեւ ոչ ոք մի 152, նեղամահ արարեր 'ի տա֊րապարտուց: Զայս դուք քաջ գիտէք և ստոյգ, զի ազգն Մամիկո֊նենից ոչ են կացեալ ծառայք ձեր,

այլ ընկերք և նախնիք մեր Թագա-
ւորքն Ճենաց, որ են պապք մեր,
այսինքն է հարք, փախեան երկու
որդիք Թագաւորին Ճենաց և ե-
կեալ բնակեցան յաշխարհիս Հայոց,
և պատուեալ եղեն 'ի Թագաւորէն՝
որպէս զհամապատիւ իւրեանց,
որոց անուանք նոցա, անդրանկանն՝
Մամ, և երկրորդին Կոն յորջոր-
ջիւր, և 'ի նոցունց անուանեցան
Մամիկոնք 152: Այլ դու Վարազ-
դատ ոչ ես Արշակունի, զի պոռ-
նըկորդի ես. արի գնա յաշխար-
հէս Հայոց, զի մի մեռցիս 'ի ձեռաց
իմոց փոխանակ եղբօր իմոյ Մուշե-
ղայ: Եւ Վարազդատ յղէր առ Մա-
նուէլ զօրավարն Հայոց տէրն Մա-
միկոնէից՝ խստագոյն պատասխանի
այսպէս. Զի ասացեր դու թէ
Թոռն եմ ես Ճենաց, զայդ արդար
ասացեր. արդ արի և երթ դու
յաշխարհն քո Ճենաց. ապա թէ
ոչ՝ և դու մեռցիս 'ի ձեռաց իմոց
որպէս զչարայրն զՄուշեղ զեղ-
բայրն քո: Իբրև լուաւ Մանուէլ
ասպարապետն Հայոց զպատգամն

Թագաւորին , ժողովէր զզօրսն Հայոց մեծաց : Իսկ Թագաւորն Վարազդատ պատրաստէր զիւր զօրսն , և ածէր 'ի Թիկունս իւր 'ի զօրացն Յունաց : Եւ իբրև բարձաւ պատգամաւորն 'ի միջոյ նոցա , պատրաստեալ երկոցունց զօրացն բանակէին 'ի դաշտին Կարնոյ : Եւ 'ի լինելն խառնման երկոցունց զօրացն 'ի միմեանս՝ 'ի պարտութիւն մատնեցան զօրք Թագաւորին և Յունաց : Եւ հասեալ զօրավարն Հայոց Մանուէլ որդւովք իւրով Համայեկիւ՝ Թագաւորին Վարազդատայ՝ և ընկեցեալ 'ի ձիոյն , և կամէր սպանանել զնա 153 Համայեակ որդին Մանուէլի Մամիկոնենւոյ : Եւ ոչ ետ նմա Թոյլ Մանուէլ սպանանել զԹագաւորն . այլ կափահարեալ զգլուխ նորա՝ դառնային 'ի բանակն իւրեանց մեծաւ ուրախութեամբ 154 : Իսկ Թագաւորն Վարազդատ փախչէր յաշխարհն Յունաց . և 'ի նմին անդէն վախճանեցաւ 155 :

Եւ Մանուէլ տիրէր աշխարհին

Հայոց ամս բաղուամս երեք որդւովք իւրովք. որոց անուն անդրանկանն Համայեակ և երկրորդին Արտաւազդ, և կրսերոյն Համազասպ:

Իսկ յետ այսորիկ զկին Թագաւորին Պապայ Հայոց որում անուն էր Զարմանդուխտ, առնոյր ասպարապետն Մանուէլ զնա երկու որդւովքն իւրովք զկնի Պապայ [156], պահէր զնոսա սրբութեամբ ըստ օրինի քրիստոնէից, և սնուցանէր զնոսա որպէս զորդիս Թագաւորի: Որ յետ այնորիկ կալան զաթոռ Թագաւորութեան հարց իւրեանց Արշակունեաց:

Եւ յետ այսր ամենայնի փոխի յաշխարհէս Մանուէլ մահուամբ, և տարեալ թաղեցին զնա 'ի գաւառէն Հայոց մեծաց` 'ի Տարօն գաւառի 'ի վանս Գլակայ [157]:

Իսկ սրբոյն Սահակայ Պարթեւի ոչ գոյր [158] որդի, բայց դուստր մի, որում անուն էր Սահականոյշ. որ տուաւ յամուսնութիւն Համազասպայ տեառն Մամիկոնի որդւոյ Մանուէլի [159]: Որ եղեւ 'ի Համա-

զպասպայ սուրբն Վարդան և սքան-չելին Հմայեակ, որ անուանիք ե-ղէն, 'ի Քրիստոս Յիսուս 'ի տէր մեր. որում վայելէ փառք իշխա-նութիւն և պատիւ այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից. ամէն :



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Ե. Օր. Բարձանէն դէրհիր Հայոց Թագաւորին Ցանաց և Պարսից։
2. Ե. Զյէշտարակ քրիստոնեան պատարա_գին խորհրդոց վրան Վաչէի։ — Տես Չամչէնէ՛ի Պատմ. Հայ. Ա. 683։
3. Ե. Ի ճանապարհս արդարութեան։
4. Ե. Յաւելու, Եւ դարձան 'ի գործս առաջինս։
5. Ե. Թաղչաց։
6. Ե. Արփաղադայ։
7. Ե. Ի մէջ։
8. Ե. Աղգապահմից և դրօշից փառաց և ամենայն սարապ.... սահմանա_պահք։
9. Ե. Ի վերայ ամենայն կենաց խորոց։
10. Ե. Ի սպասու։
11. Ե. Ամենայն։
12. Ե. Զառաջնորդութիւն։ — Յօր. եղեալ էր այսպէս. ընդերակացու_թեան. գուցէ կամելով զերել ըղ_կարգ վերակացութեան։

27 . Այլք՝ Անգղէայք , կամ Անգէ-
ղէայք , և եօթն ՕՕ . Գեղէայք ։

28 . Վեց ՕՕ . Վարուածնունիք . այլք
Վարծունիք կամ Վարծնունիք ։

29 . Եօթն Օր . Մարդպետունիք ։
2 Օր . Մարգպետունիք ։

30 . Միայն մերս , այլքն Պալունիք ։

31 . Բ Օր . Կաղբէք ։

32 . Այլք , Սխառնեանք , Սառանեանք ,
Սխոէանք , Սխոխանեայք ։

33 . Բ Օր . Կագմեանք ։

34 . 4 Օր . Մանավազեանք . 4 այլ
Օր . Մանազեանք ։

35 . 7 Օր . Կորճեանք կամ Կամրեանք ։

36 . 7 Օր . Գխունեանք ։

37 . Ոմանք Եկեղէգեանք կամ Եկե-
ղէկոկանք ։

38 . 7 Օր . Քամսունիք . 3 օր . Քաջ-
պետունիք ։

39 . Ոմանք՝ Սրուանձտեայք , Սրուա-
տեայք , Սրուանձտայք , Սրուանձ-
նեանք ։

40 . Բ Օր . Ապահունիք . մի օր . Առ-
պարտունիք . միւս՝ Առպարտունիք ։

41 . Այլք Աղձնիք կամ Աղձնունիք ։

42 . 5 Օր . Գօշեանք ։

43 . 7 օր . Կաղմուանիք :
44 . 7 օր . Լոխուանիք կամ Լուխուանիք :
45 . Այլք Գնթուանիք :
46 . 6 օր . Ապդդափուանիք :
47 . 3 օր . Մահեանք :
48 . Ոմանք Մրուանիք կամ Մրուաանիք :
49 . Ռ օր . Ռաճղուանիք :
50 . 3 օր . Աւդարուանիք :
51 . 7 օր . Սիրեանք :
52 . Այլք Դիմաքսեանք :
53 . 3 օր . Մրուանիք :
54 . 3 օր . Դարբանփուանիք :
55 . 7 օր . Կոլլեանք :
56 . Ռ օր . Վանանչեանք :
57 . 7 օր . Ռաճնուանիք :
58 . 7 օր . Սուրծայրք :
60 . Մի օր . Մեւնիփինեանք :
61 . Այլք Դաշփխարուանիք , Դաշփ- խարօնք , Դաշխարինք , Դաշփարինք , Դաշրանիք :
62 . Ոմանք Փերեւջուանիք :
63 . Այլք Մշեանք :
64 . 7 օր . Աշփորոնեանք :
65 . 7 օր . Ախագորեանք . Այլք Աշ- խագարեանք :
66 . Ռ օր . Համազուանիք :

67. Այլք Առաքելանիք ։

68. Այլք Ծայթրականիք, Սաթրա-նիք, Ցաթրականիք, Ցաթրականիք, Ցայթրականիք ։

69. Այլք Վահանածիրադեպք, Վա-նահծիրադեպք, Վիհանածիրադեպք ։

70. Այլք Վարաղպեանք, Վարա-ղեանք, Վարաղափեանք ։

71. 3 Օր. Անջփեայք ։

72. Չիք յ' Բ Օր ։

73. 3 Օր Քայեանք ։

74. Այլք Խորջեանք. և ոմանք Խո-րենիք ։

75. Այլք Համբոածեանք կամ Հա-մաբոածեանք ։

76. Ոմանք Կարթեանք ։

77. Ոմանք Ջարեհոսանք ։

78. Այլք Բծնաանիք, Վծնաանիք, Բղնաանիք ։

79. Այլք Կոոողեանք, Կղոողեանք ։

80. 7 Օր. Արփաշածեանք ։

81. 7 Օր. Արծուոյ փերք. Մի օր. Արքայծափերք ։

82. 7 Օր. Դոպոեանք. 2 օր. Տաք-ոեանք ։

83. 7 Օր. Բագրատունիք. Ոմանք

100 · Մի օր · յաւելու և Գառառառա-փէտք :

101 · Այլք Յոոոհննէանք կամ Յոհ-ոէհնէանք :

102 · 3 Օր · Փոխկայոանիք :

103 · Այլք Մոոպէան , Մոյապէան :

104 · 7 Օր · Խոհնոյն կամ Հնոյն :

105 · Ոմանք Բղնոանիք , Բաղաոանիք :

106 · Ոմանք Աղնէոոանիք , Աղնէոոա-նիք , Աղէոոանիք :

107 · 7 Օր · Ցխոանէանք , 3 Օր · Ցխա-նեանք :

108 · 7 Օր · Կղղոանիք կամ Կղըղ-նոանիք :

109 · 3 Օր · Տոոշկոանիք :

110 · Այլք Մողկէնիք , Մայոանիք , Մաոանոանիք :

111 · Ցանկալի էր մեզ փոքր մի եւս երկայնամտել հեղինակին կամ առաջին գաղափարողացն և ողջ ածել զչարս դասակարգութեան իշխանաց տանս Հայոց · զոր Թուի թէ և ինքնին որ նախ գրեաց ըզ-վարս մեծին Ներսիսի՝ յարքունի դիւանացն եհան : Մեծին Խոս-րովայ կարգեալ ասէ պատմիչս

զբարձս Հայոց , իսկ Խորենացին ( Գ . կէ ) յԱրտաշրէ Սասանեանց . Թերեւս զի փոփոխեաց սա զխոսրովայ կարգսն և ըստ կամի յարդարեաց . զնոյն վերաւորին եւ հաստատել և Ս . Սահակ որդի և ժառանգ Ներսիսի , յետ բարձման Արշակունեացն պայազատութեան՝ ձեռամբ Վռամայ արքայի Պարսից , որպէս յիշէ Մովսէս . և հաստատէ ստուգութեամբ նոյն ինքն Նամակ գահուց Սահակայ , որ յառաջ քան զամս սակաւս՝ գտաւ ըստ մամնէ 'ի մագաղաթի երկաթագիր , 'ի կողս մատենի միոյ , 'ի Մոսկով քաղաքի , զոր և գաղափարեալ բանասիրի ուրումն և բարեկամի՝ մասնաւորեաց և մեզ . յորում Թուին բարձք եօթանասուն , և պակասէ պատճենն , որոյ և սկզբանն բանք Թերատք . . . . " Հրամա-
" նաւ արքայից արքայի . և ես
" Սահակ Հայոց կաթողիկոս . . . .
" եդաք մատանի զարքայից ար-
" քայի եւ զմերս . եւ է այսպէս
" արդար և ճշմարիտ .

Առաջինն Իշխանն Հայոց և Մախ-ղաղն

Ա. Սիւնեաց տէր. Բ. Աղուեան, Գ. Արծրունեաց տէր. Դ. Մամիկոնէից տէր. Ե. Շահապն Ծոփաց տէր. Զ. Մոկաց տէր. Է. Ռշտունեաց տէր. Ը. Վահունեաց տէր. Թ. Կասպէից տէր. Ժ. Անձաւացեաց տէր. ԺԱ Ապահունեաց տէր. ԺԲ. Կամսարականն. ԺԳ. Այլ Ապահունի. ԺԴ Վանանդացին. ԺԵ. Ամատունի տէր. ԺԶ. Գողթան տէր. ԺԷ. Գնունեաց տէր. ԺԸ. Այլ Անձաւացին. ԺԹ. Տայոց. Ի. Բասենոյ դատաւորն. ԻԱ. Գնթունեաց տէր. ԻԲ. Վարձառունին. ԻԳ. Գարդմանաց տէր. ԻԴ.... ԻԵ. Սահառունին. ԻԶ. Գաբեղենից տէր. ԻԷ. Աբեղենից տէր. ԻԸ. Սիւնեաց երկրորդն. ԻԹ. Արծրունեաց երկրորդն. Լ. Արծրունեաց երրորդն. ԼԱ. Մամիկոնէից երկրորդն. ԼԲ. Ռոփսեանն. ԼԳ. Գաշոցեանն. ԼԴ. Դիմաքսեան. ԼԵ. Բուխս Դիմաքսեան. ԼԶ.

Այլ Աբեղեան . ԼԷ . Այլ Դի-
մաքսեան . ԼԸ . Պալունին . ԼԹ .
Առաւեղեան . Խ . Աշահմարեան .
ԽԱ . Համբուժեան . ԽԲ . Վա-
րասպակեանն . ԽԳ . Ձիւնա-
կանն . ԽԴ . Ակէացին . ԽԵ . Զա-
րեհաւանեանն . ԽԶ . Ընծայե-
ցին . ԽԷ . Մանդակունին . ԽԸ .
Սղկունին . ԽԹ . Տայգրեանն . Ծ .
Էրմանթունին . ԾԱ . Սպանդու-
նին . ԾԲ . Առաւենեանն . ԾԳ .
Տրունին . ԾԴ . Մամբերացին .
ԾԵ . Հաւնունին . ԾԶ . Բժնու-
նին . ԾԷ . Քաջբերունին . ԾԸ .
Մեհնունին . ԾԹ . Նախճէրին .
Կ . Քաղաքապեան արքունի .
ԿԱ . Որսապեան արքունի . ԿԲ .
Արաաշէսեանն . ԿԳ . Վանան-
դացին երկրորդ . ԿԴ . Ցունի .
ԿԵ . Վիժանու . ԿԶ . Անքածոյ .
ԿԷ . Ծիրակադիմաքսեան . ԿԸ .
Գաղրիկանն . ԿԹ . Մարացեան
տէր . Հ . Վագրասպունին ,, :

112 . Զորոց զԹիւ Բ օր . ասէ ա՛Երլ-
,, կու հազար և քառասուն ,, այս-
պէս վկայեն և ամենայն պատմիչք
վարուց Ներսեսի :

113. Զպատմութիւն պատկերին և զտեղւոյն գտցեն խնդրողք 'ի Մատենագրութիւնս Խորենա_ցւոյն ։

114. Զկնի՝ 34 ամս ասէ զբովան_դակ ժամանակ աթոռակալու_թեանն, որպէս և այլք 'ի պատ_մըչաց և գաւազանագիրք. սակայն ոչ ստուգի 'ի ժամանակագրու_թենէ, հարկ է թէ ոչ աւելի քան զքսան ամ եկաց նա յաթոռն. իսկ որք աւելի ասեն՝ գուցէ զամս քահանայապետութեան Նորա համարին հաշուել յամէ մա_հուան հաւուն իւրոյ Ս. Յուս_կան ։

115. Միւսն՝ Ցէ-թն . . . Ւէրէ- ւմ- անչն նոփարէալ ։

116. Միւսն՝ Քոոթին ։

117. Միւսն՝ Անի օծէ ։

118. Միւսն՝ Դուղրթեյան ։

119. Միւսն՝ Խնոյր ։

120. Միւսն՝ Անփէրռանչփ ։

121. Վասն գիտականց սոցա ասէ Վարդան պատմիչ. « Յաւուրս » յայսոսիկ (յամին 1161) յայտ_

» նեցան 'ի Ղահապիվանս մար֊
» մինք սպանողացն Գնելայ, ան֊
» փուտ հանդերձիւք և արիւնա֊
» շաղախ մարմնով, որպէս և
» սպանանն ըստ անիծից Ս. Ներ֊
» սիսի » ։

122. Բ. Խորհէր պատերազմ յարուցա֊
» նել, բայց ոչ համարձակէր. զի յայնմ
» ժամու հարեալ էր զօրքն Հայոց
» բեւրս երկու 'ի Հոռոմոց » ։

123. Բ. ՕՐ. Յաւելու. Եւ պատու֊
րեալ 'ի խորգ և 'ի մոխիր ։

124. Բ. Մօսէ ։ — Խաբուսական . . Սպան֊
դարապ ։

125. Այն է Խրիսոպօլիս, որ է
Իւսկիւտար առան Կոստանդնու֊
պօլսոյ յասիականողման ։

126. Բ. Եւ կոտորէին ամենայն և այլն
յաւուրն յայնմիկ ։

127. Բ. Հէծմաթաչայց, Բուգորէից,
Իծամահոց, Ճոռճայց, Գոռայց,
Գղուարաց, Մագագայց, Ողայց,
Ըղբայց, Ճղբայց, Մաղասանից և
Գետայց, Սաւրանայց ։

128. Ի լուսանցսն եդեալ էր Կց.
ԴԿ. այսինքն է Կցուրդ 'ի ձայն
ԴԿ (չորրորդ կողմն) ։

129. Աստանօր յիշատակութիւն Մեսրոպայ, որպէս և զկնի (էջ 100) մատնանիշ իմն ցուցանէ, զի կամ սա ինքնին գրեաց նախ զվարս մեծի քահանայապետին, և կամ պատմեաց մանրամասն, և մի ումն յաշակերտաց նորա եդեալ 'ի գիր. բայց հաւանագոյն է թէ ինքնին զյետին բանս Սրբոյն նշանակեալ էր գրով, զաղօթսն ասեմ և ըզգուշակութիւնսն. որք ապա փոխեցան 'ի հայ գիր: Իսկ ո՞յր արդեօք յաշակերտաց Մեսրոպայ դիպողագոյն էր զվարքս գրել, քան թէ նորին ինքեան քեռորդւոյն՝ քաջին Մովսիսի, և հաւաստոյ տան կարծեացս որք քննեալ զդիւանս Երուսաղէմացւոց 'ի Ս. Յակոբ՝ ասացին թէ այս պատմութիւն վարուց Ներսիսի մակագրեալ էր յանուն Խորենեցւոյն: Սակայն եթէ Մովսիսի գրեալ իցէ և եթէ Աբրահամու, զի սա կոչի հեղինակ Արեւելեան գրոց պատմութեանց, յորմէ օժանդակեցաւ

Մեսրովբ երեց վերատին յերիւ-
րող պատմութեանն, և եթէ նո-
ցայն վարդապետի, երեւի ու-
րեք և ձեռին օտարի մնեալ 'ի
նոյն ։ — Իսկ բանք յիշատակի
Մեսրովպայ երիցու այս են.
“ Ի ՆԺԶ ( 967 ) Թուակա-
” նիս Հայոց և 'ի վերադիտո-
” ղութեանն տեառն Վահանայ
” Հայոց կաթուղիկոսի, և յամս
” Աշոտոյ Բագրատունւոյ Հայոց
” Թագաւորի 'ի տանէն Շիրա-
” կայ, ես Մեսրովպ նուաստ
” քահանայ 'ի Վայոց ձորոյ 'ի
” գեղջէ Հողոցմանց, ուստի Յով-
” սէփ էր երանելի նահապետն
” յաւուրս սրբոյն Վարդանայ...
” մեծ ցանկութեամբ ծաղկաքաղ
” արարի զգիրքս զայս 'ի Հայոց
” մնացորդաց յԱրեւելից դրոց.
” զյաղթութիւն և զվատթարու-
” թիւն Թագաւորացն Հայոց և
” Վրաց, և զառաքինութիւն և
” զսքանչելիս հայրապետաց տոհ-
” մից սրբոյն Գրիգորի Լուսա-
” ւորչին, և զտեսիլ և զկտակ

” սրբոյն Ներսեսի , և զջաջու-
” թիւն և զյաղթութիւն արիա-
” կան ազգին Մամիկոնէից : . . .
” Եւ արդ զայս հանեալ յԱրե-
” ւելից գրոց 'ի Հայոց մնացոր-
” դացն պատմութեանց . և ետու
” որդիացելոյ իմոյ սուրբ աւա-
” զանին ծննդեամբն , Վահանայ
” Մամիկոնենոյ , 'ի գեւղն որ
” կոչի Վարժի ” :

130 . Ի լուսանցս Կց . Դ·Կ : Այսու-քիկ և որք զկնի Ողջոյնքն , վէհք և խորինք և յաւերժականք իմն բանք , որք ապա յերգս շարականաց մերոց յեղան 'ի կարգս հանգստեան , կամ յառաջագոյն 'ի Ներսիսէ արտադրեալք էին և կամ ուսեալ 'ի բանից սրբոց հարց եկեղեցւոյն Յունաց , և կամ զուգախառնութիւն ժամուց մահուն և մերձեցելոյ յաւիտենականութեան՝ ազդէր նմա . և որպէս 'ի կեանսն՝ նոյն և 'ի մահուն՝ հրաշալի ոմն և մեծոգի գտանէր 'ի մահացուս Պարթեւն այն , և արժան է մեզ երախտիս նմա մա-

տուցանել և վասն այսպիսեաց նորա աւանդելոցս բանից. զի եհաս իսկ մեզ ընթեռնուլ 'ի Ղարանկնոցի հնումն, 'ի դասս հեզինակաց երգոցն՝ յիշել այսպէս « Ձհանգստեանն՝ Ներսէս Պարթեւ »: Գուցէ թէ և 'ի կարգս մատենի աղօթից նորա անկեալ էին այս բանք, զի յիշէ ուրեմն և մատեան աղօթից յանուն նորա:

131. Ի Լուս. ՁԱ. այսինքն է, առաջին ձայն:

132. Բ. Հոյլով:

133. Բ. Քահանայապետութիւն:

134. Գերութիւն խաչին 'ի Պարսից հանդիպի ամօք աւելի քան զ'170 յետ մահուան Ս. Սահակայ, յաւուրս Խոսրովու: — Չիք երկբայութիւն, նա իսկ եւ հաստատուն աւանդութիւն ընկալեալ է յազգէս, զի բազում բանս մարգարէականս խօսեցաւ այրն Աստուծոյ Ներսէս 'ի ժամ մահուան. այլ և ընդ այն ոչ է երկբայել, զի յանուն նորա յօդեցին և այլք բանս բազումս, որպէս և

տատ յետ բանից տաճանն Երուսաղեմի 'ի Հռովմայեցւոց` 'ի կարգի պատմութեան Մեսրովբայ երիցու գտանին երկար բանք ըզկատարածէ ժամանակաց և զյետին թագաւորութենէ Հայոց և զվախճանէ աշխարհի, որ 'ի հին պատմութեան վարուցս յայսմիկ ոչ գտանին : Իսկ յԲ Օր . ուրոյն զատ յետ պատմութեանն գրեալ կայ այն գլուխ, և զի պակասէ սկիզբն և խորագիրն, անգիտանամք և զո՛ւստն . են են և յայսորէն եղեալ բանս բնագրին` ինչ ինչ 'ի ձեռն քննելոյ և ճշգելոյ, բայց ոչ ներէ մեզ տեղիս :

135 . Բ ՕՐ . Ըստ Բանին :
136 . Բ և Գ . Պարբերաբար :
137 . Գ . Հովանաւորի :
138 . Բ . Գ . Քաղաքի :
139 . Բ . ՄԵԼԻՓԻՆԷ : Գ , ՆԵՂԻՓԻՆԷ :
140 . յՕր . պակասէր [illegible] :
141 . Երկու Օր . Ոմանց և յերկրէ փոյէ ղարփայութինն : Թուեցաւ ոմանց 'ի հարց և յաստուածաբանից` թէ որք անկանուկք մեռա-

նին երախայքն՝ յետ յարութեան մեռելոց կեցցեն 'ի վերայ երկրի․ յայս թուի ակնարկել և սրբոյս ։ Բայց Եկեղեցւոյ ոչ է վճարեալ ինչ հաստատութեամբ զխնդրոյս, և ոչ մեզ վճռելի ։

142․ յՕր․ Եկեղեցեացն ։

143․ Ի լուս․ ՁԳ․ ԿՑ ։

144․ Ցայս վայր կարգեալ Գ․ օր․ զապօթսն, ապա զեղջէ ասելով․ Եւ այլն ամենայն՝ զոր գտանես 'ի չխա-նափար պարմութեան խորամ․ և ա-ղօթեաւ յերկար, և ապա հրամայեաց բազմութեան ժողովոյն 'ի բաց երթալ, և այլն․ որով յայտ առնէ՝ զի երկարք եւս էին բանք աղօթիցն, գուցէ և քան զնշանակեալսն յ'Ա և 'ի Բ․ օրինակսն, և զի ոճով գրեալ էր ամենայն յընդարձակ պատ-մութեանն ։

145․ Այսպէս յՕր․ իսկ 'ի Բ․․ Թադէոսի և Գրիգորի․ և շարաւրս իմ ողջութեամբ ։ Եւ այժմ փէր Յի-սուս և այլն ։

146․ Բ ՕՐ․ Յաւելու․ Ի յարկաց յաւիտենից, որ հանգուցիչք էս ա-

խափելոյ . և զոր յանցեալ է իմ գի-
տութեամբ և անգիտութեամբ՝ թողու-
թիւն շնորհեա ինձ մարդասիրութեամբ
քո . վասն զի մի է մարդ որ կեցցէ և
ոչ մեղիցէ . զի դու միայն ես առանց
մեղաց , և քեզ փառք յաւիտեանս :

147 . Այսանօր աւարտէ Գ օր . որ-պէս և կարգ բանի պատմութեան սորայն պահանջէ . բայց գրի հետեւեալ գլուխդ վերջաբան 'ի բուն Օր . և յ' Գ . և յայլում երկաթագիր հատուածի պատմութեանն , զոր ունիմք . և կոչեսցուք Դ օր . , գրեալ 'ի սկիզբն կոյս ԺԲ դարու , որպէս յիշատակարանն ցուցանէ . «Գրե-
» ցաւ հիահրաշ պատմութիւնս
» տեառն Ներսիսի մեծ վկայի
» Քրիստոսի և աստուածագա-
» ւան վերադիտողի Հայոց . 'ի
» Թուականիս Հայոց 'ի ԵՃԶ
» ( 1131 ամ տեառն ) . ձեռամբ
» մեղաւորիս և անարժան ծա-
» ռայիս Քրիստոսի Յակոբոսի
» կրսերի և վերջ . . . . . . . .

148 . Բ ՕՐ . Նախարարքն և սեպուհք

և Եպիփանոսի , և Թէոդորիտին , և այլն ։

149 . Բ . Բաց Սահաստանէաց , այսպէս և զկնի ։

150 . Բ . և այսպէս ատանդէաց գոփին ։

151 . յՕր . Գըլխաչայ ։

152 . Բ . Ղուշինչ մ ։

153 . Մովս . Խոր . մի զոք միայն ասէ զեկն 'ի Ճենաց Մամգուն անուն . իսկ սա երկուս՝ Մամ և Կոն , որում և այլք 'ի պատմչաց հետեւին . քանզի Աղաթանգեղի ասեն նախ այսպէս զայս գրեալ , և ըստ նմանէ՝ Ղազարայ Փարպեցւոյ , յորոց և այլք , որպէս վկայէ և Սիմէոն Ապարանեցի 'ի Վիպասանութեանն Մամիկոնեանց .

« Այլ զՃենազուն ընտանիքեալ
զՄամիկոնեանքն զեկուցեալ . ( Ղազ . Փարպ . )
Բայց Մովսէսի ոչ հաւանեցեալ ,
Աղաթանգեղեայ զալ հետեւեալ .
Այն՝ որ զգերագոյն Ճենաց հարցեալ՝
Ի տեղանէ զպատուեալն ասեալ ,
Որ է զգուշ մեր ասացեալ ։
Մամն եւ Կոնակըն փախուցեալ
Ճենաստանէ 'ի Պարս անցեալ , և այլն ։

Այսպէս միայն և 'ի քաղուածս պատմութեանց կարգեալս նախ քան զպատմութիւնն Հերակլի 'ի Սեբէոսէ, որ 'ի հերուն տպագրեցաւ 'ի Կոստանդնուպոլիս. ուր (էջ 28) բանքն զՃենաց՝ և հարցուածն՝ Ագաթանգեղեայ են և ոչ Ստեփանոսի Տարօնացւոյ, որպէս երկբայի կամ կարծէ բանասէր հրատարակիչն. քանզի Ստեփանոսդ այդ՝ Ասողիկն է, այնչափ կրտսեր ժամանակաւ քան զՍեբէոս որչափ սա քան զԱգաթանգեղ. և 'ի նմանէ գաղափարեալ է ողջոյն հատուածն որ 'ի գլխոյ անուանեալ Բ, դպրութեան՝ ցայնն.. «զնոյն ձեւ օրինագրէ»։ Իսկ հետևեալն «Զմամիկոնէից» և այլն վերնագիր է նորոյ հատուածի տեղեկութեան զՄամիկոնենից, այլ թերատ և խառն. որպէս և ամենայն բանք պատմութեանն ց'Գ անուանեալ դպրութիւնն, խմբագրութիւնք են զանազան պատմըչաց բանից, բազում ուրեք անյարիրք և պակասք. և յայտ է թէ է

ինչ որ 'ի Սեբիոսէ և է որ 'ի յետա-
նոց մուծեալ կուտեալ է յայն ։

154․ Դ Օր․ պատանեակն Հմայեակ ։

155․ Բ և Դ․ յաղթութեամբ ։

156․ Դ․ և անդ վախճանէր ։ Բ․ և անդ ստափանէր ։

157․ Դ․ Իսկ զկին Պապայ թագաւորին Հայոց, որում անուն էր Զարմանդուխտ, երկու որդւովքն իւրովք՝ որոց անուն առաջնումն Արշակ, և երկրորդին Վաղարշակ, առնոյր Մանուէլ, և այլն ։

158․ Դ․ Եւ յետ այնորիկ ծոխի յաշխարհէս Մանուէլ սպարապետն Հայոց փէրն Մամիկոնէնից իւրով մահուամբ․ և բարձեալ զմարմին նորա տարան 'ի Տարօն գաւառն և թաղեցին 'ի վանսն Գլակայ ։

159․ Բ և Դ․ արօր որդի ։

160․ Դ․ Համազասպայ որդւոյ Մանուէլի Մամիկոնէնից փեսայն ։ Եւ ծընէր 'ի Համազասպայ սուրբն Վարդան և երանելին Հմայեակ, և սքանչելին Համազասպեան ։ Յիշէ և Բ․ Օր․ զ՚երանելին Համազասպեան, և յաւելու․ Որ մինչեւ 'ի սոսա էին

էհաս օրհնութիւն սրբոյն Ներսիսի. որպէս և 'ի սոյին պատմութեանց առա_նուաս չքաջութիւն սոցա, որ պսակե_ցան անթառամ պսակօքն 'ի Քրիստոս Յիսուս: *Իսկ զպատմութիւն սո_ցա ունիմք յԵղիշեայ, որպէս և ասէ իսկ յայտնապէս Օր. մի գրեալ 'ի ՉՁԴ.* Ի սոյին պատմու_թեանցն առանուս չգեղութիւն քաջու_թեանց, զոր ծաղկեալ առաք ծանուցի_ յարմարեալ է սրբոյն Եղիշէի վարդա_պետի. որ և պսակեցաւ 'ի թագ ար_քայութեանն երկնից:

